## Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3 ՄԱՐՏ, 1981
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.
Выходит один раз в месяц на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ✦ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՄԱՍԻՆ

1981 թվականի փետրվարի 23-ից մինչև մարտի 3-ը Մոսկվայում, Կրեմլի համագումարների պալատում տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության հերթական՝ XXVI համագումարը:

Համագումարը հաստատեց հետևյալ օրակարգը:

1. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVI համագումարին և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում. զեկուցող՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնև:

2. ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը. զեկուցող՝ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի նախագահ ընկեր Գ. Ֆ. Սիզով:

3. ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները. զեկուցող՝ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկեր Ն. Ա. Տիխոնով:

4. Կուսակցության կենտրոնական մարմինների ընտրությունները:

Պատգամավորները միաձայն ընտրեցին համագումարի նախագահություն, քարտուղարություն, խմբագրական և մանդատային հանձնաժողովներ:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցմամբ հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը, որին ողջ դահլիճը դիմավորեց բուռն, երկարատև ծափահարություններով, օվացիայով: Զեկուցումը լսվեց չթուլացող ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր ջերմ ծափահարություններով:

ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությամբ հանդես եկավ հանձնաժողովի նախագահ ընկեր Գ. Ֆ. Սիզովը:

Այնուհետև քննարկվեցին Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը և ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում կուսակցության խնդիրները, ինչպես նաև ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը:

ՍՄԿԿ XXVI համագումարը ամբողջովին ու լիովին հավանություն տվեց կուսակցության Կենտրոնական կոմիտեի լենինյան կուրսին և պրակտիկ գործունեությանը: Համագումարը հավանություն տվեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցմանը և բոլոր կուսակցական կազմակերպություններին առաջարկեց իրենց աշխատանքում ղեկավարվել ներքին ու արտաքին

քաղաքականության բնագավառում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ առաջադրված դրույթներով ու խնդիրներով:

Համագումարը որոշում ընդունեց ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախապատրաստման մասին: Միաձայն հաստատվեց ՍՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը:

Օրակարգի երրորդ հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկեր Ն. Ա. Տիխոնովը, որին համագումարի պատգամավորները և հյուրերը դիմավորեցին ջերմորեն: Ընկեր Ն. Ա. Տիխոնովի զեկուցման շուրջը ծավալվեց մտքերի փոխանակություն:

Համագումարը միաձայն հաստատեց «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները» և ընդունեց համապատասխան որոշում:

Ընդունվեց նաև որոշում ՍՄԿԿ XXVI համագումարին հասցեագրված աշխատավորների նամակների ու դիմումների, կոմունիստների գանգատարկումների մասին:

Այնուհետև տեղի ունեցան կուսակցության կենտրոնական մարմինների ընտրությունները:

ՍՄԿԿ Կենտկոմի հրավերով XXVI համագումարի աշխատանքներին մասնակցեցին 109 երկրների կոմունիստական, բանվորական, ազգային-դեմոկրատական և այլ կուսակցությունների ու կազմակերպությունների 123 պատվիրակություններ: Համագումարում, ինչպես նաև աշխատավորական կոլեկտիվների հետ հանդիպումների ժամանակ արտասահմանյան պատվիրակությունների ղեկավարները հանդես եկան ողջույնի խոսքերով:

Կուսակցության XXVI համագումարի եզրափակիչ նիստում ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը, որին պատգամավորներն ու հյուրերը լսեցին մեծ ուշադրությամբ: Ճառը բազմիցս ընդհատվում էր բուռն, երկարատև ծափահարություններով:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVI համագումարը հայտարարեց փակված:

Պատգամավորներն ու հյուրերը մեծ ոգևորությամբ կատարեցին կուսակցության հիմնը՝ «Ինտերնացիոնալը»:

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1981 թ. մարտի 3-ին տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVI համագումարի ընտրած ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումը միահամուռ կերպով ընկեր Լ. Ի. Բրեժնևին ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար:

Պլենումը միահամուռ կերպով ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրո՝ հետևյալ կազմով.

Քաղբյուրոյի անդամներ՝ ընկերներ Լ. Ի. Բրեժնև, Յու. Վ. Անդրոպով, Մ. Ս. Գորբաչով, Վ. Վ. Գրիշին, Ա. Ա. Գրոմիկո, Ա. Պ. Կիրիլենկո, Դ. Ա. Կունաև, Վ. Վ. Շչերբիցկի, Կ. Ու. Չեռնենկո, Ա. Յա. Պելշե, Գ. Վ. Ռոմանով, Մ. Ա. Սուսլով, Ն. Ա. Տիխոնով, Դ. Ֆ. Ուստինով:

Քաղբյուրոյի անդամության թեկնածուներ՝ Հ. Ա. Ալիև, Պ. Ն. Դեմիչև, Տ. Յա. Կիսելյով, Վ. Վ. Կուզնեցով, Բ. Ն. Պոնոմարյով, Շ. Ռ. Ռաշիդով, Մ. Ս. Սոլոմենցև, Է. Ա. Շևարդնաձե:

ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարներ ընտրվեցին ընկերներ Լ. Ի. Բրեժնևը՝ Կենտկոմի գլխավոր քարտուղար, Մ. Ա. Սուսլովը, Ա. Պ. Կիրիլենկոն, Կ. Ու. Չեռնենկոն, Մ. Ս. Գորբաչովը, Բ. Ն. Պոնոմարյովը, Ի. Վ. Կապիտոնովը, Վ. Ի. Դոլգիխը, Մ. Վ. Զիմյանինը, Կ. Վ. Ռուսակովը:

Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեի նախագահ հաստատեց ընկ. Ա. Յա. Պելշեին:

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆԸ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ ԵՎ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԵՐԹԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ ՆԵՐՔԻՆ ՈՒ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

**ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը**

1981 թվականի փետրվարի 23-ին

*Ընկե՛ր պատգամավորներ: Հարգելի հյուրե՛ր:*

*Մեր կուսակցության հերթական, քսանվեցերորդ համագումարը սկսեց իր աշխատանքը:* (Ծափահարություններ): *Ինչպես միշտ, համագումարն ամփոփելու է արդյունքները, որոշելու է ապագայի խնդիրները:*

*Գնահատելով անցած ուղին, կարելի է հաստատորեն ասել՝ XXV համագումարը ճշտորեն սահմանեց հասարակական զարգացման հիմնական միտումները և ուղղությունները:* (Ծափահարություններ): *Կուսակցության լենինյան գլխավոր գիծը վստահորեն կենսագործվում է. նախորդ համագումարներում առաջ քաշված խնդիրները ամբողջությամբ վերցրած հաջողությամբ են լուծվել:* (Ծափահարություններ):

*Տասներորդ հնգամյակի արդյունքը եղավ երկրի ազգային հարստության զգալի ավելացումը: Աճեց նրա արտադրական և գիտատեխնիկական պոտենցիալը: Ամրապնդվեց սովետական պետության պաշտպանունակությունը: Բարձրացավ մեր ժողովրդի բարեկեցության և կուլտուրայի մակարդակը:*

*Սովետական ժողովուրդների ընտանիքը դարձավ է՛լ ավելի համախմբված, ապրում է է՛լ ավելի համերաշխ:* (Ծափահարություններ):

*Խոշորագույն իրադարձության վերածվեց ՍՍՀՄ նոր սահմանադրության ընդունումը: Այն բացեց սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման ավելի*



*բարձր փուլ: Ավելի ու ավելի է ակտիվանում սովետական մարդկանց մասնակցությունը հասարակության և պետության գործերի կառավարմանը:*

*Անցած հինգ տարում է՛լ ավելի ամրապնդվեց կուսակցության և ժողովրդի անխախտ միասնությունը: Այն եղել և մնում է մեր հասարակության հզոր ուժի աղբյուրը:* (Ծափահարություններ):

*Միջազգային առումով հաշվետու ժամանակաշրջանը բարդ և բուռն ժամանակաշրջան էր: Այն նշվեց նախ և առաջ համաշխարհային քաղաքականության մեջ երկու ուղղությունների ինտենսիվ պայքարով: Մի կողմից՝ սպառազինությունների մրցավազքը սանձահարելու, խաղաղությունն ու լարվածության թուլացման պրոցեսն ամրապնդելու, ժողովուրդների սուվերեն իրավունքներն ու ազատությունները պաշտպանելու կուրս: Մյուս կողմից՝ լարվածության թուլացման պրոցեսը խարխլելու, սպառազինությունների մրցավազքն ուժեղացնելու կուրս, սպառնալիքների և ուրիշի գործերին միջամտելու, ազատագրական պայքարը ճնշելու քաղաքականություն:*

*Դրանք Սովետական Միության և սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների հզորության, ակտիվության ու հեղինակության հետագա աճի տարիներ էին:*

*Նոր հաղթանակներով նշանավորվեց ժողովուրդների հեղափոխական պայքարը: Դրա վկայությունն են Եթովպիայում, Աֆղանստանում, Նիկարագուայում տեղի ունեցած հեղափոխությունները, հակաժողովրդական, միապետական վարչակարգի տապալումը Իրանում: 70-ական թվականներին փաստորեն ավարտվեց գաղութային կայսրությունների վերացումը:*

*Նեղացավ աշխարհում իմպերիալիստական տիրապետության ոլորտը: Սրվեցին ներքին հակասությունները կապիտալի երկրներում և նրանց մրցակցությունը: Խիստ աճեց իմպերիալիզմի և ամենից առաջ՝ ամերիկյան իմպերիալիզմի քաղաքականության ագրեսիվությունը:*

*Այն պայմաններում, երբ 80-ական թվականների սկզբներին միջազգային հորիզոնում թանձրացան ամպերը, Սովետական Միությունը հաստատակամորեն շարունակում էր պայքարը պատերազմի սպառնալիքի վերացման, լարվածության թուլացման պրոցեսի պահպանման ու խորացման համար, գործնականում զարգացնում էր փոխշահավետ համագործակցությունը աշխարհի երկրների մեծամասնության հետ:*

*Մյուս խաղաղասեր պետությունների, Արևմուտքի՝ ռեալիստորեն մտածող շրջանների հետ մեկտեղ մենք հաշվետու ժամանակաշրջանում շարունակում էինք պայքարը սպառազինությունների մրցավազքի դեմ:*

*Եթե ամեն մի սովետական մարդու՝ կոմունիստի կամ անկուսակցականի, հարցնեք, թե նախ և առաջ ինչով է նշանավոր մեր կուսակցության ուղին վերջին տարիներս, ապա ի պատասխան կլսեք՝ այդ ուղին ամենից առաջ նշանավոր է նրանով, որ հաջողվում է պահպանել խաղաղությունը:* (Երկարատև ծափահարություններ): *Տարբեր տարիքի և պրոֆեսիայի մարդիկ ամբողջ սրտով ասում են՝ շնորհակալություն քեզ, կուսակցությո՛ւն, դրա համար:* (Երկարատև ծափահարություններ):

*Այսօր միանգամայն ակնհայտ է՝ Սովետական Միությունը և նրա դաշնակիցները այժմ ավելի, քան երբևիցե, հանդիսանում են խաղաղության գլխավոր պատվարը աշխարհում:*

*Ամբողջությամբ վերցրած, ընկերնե՛ր, XXV համագումարից հետո անցած ժամանակաշրջանը սովորական չի եղել, քիչ չեն եղել դժվարություններ թե՛ երկրի տնտեսական զարգացման ասպարեզում, թե՛ միջազգային դրության մեջ:*

*Այդուհանդերձ առաջադրված նպատակներն իրագործված են: Դա մեկ անգամ ևս վկայում է սոցիալիստական հասարակարգի վիթխարի հնարավորությունների մասին, սովետական ժողովրդի անձնվիրության, մեր լենինյան կուսակցության սկզբունքային, դասակարգային քաղաքականության ճշտության մասին:*

# I.

# ՍՄԿԿ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Խաղաղության ամրապնդման, միջազգային լարվածության թուլացման պրոցեսի խորացման համար մեր պայքարը նախ և առաջ պայքար է հանուն այն բանի, որ սովետական ժողովրդի համար անհրաժեշտ արտաքին պայմանները ապահովվեն նրա առջև կանգնած ստեղծարար խնդիրների լուծման նպատակով: Դրանով մենք լուծում ենք նաև հիրավի համաշխարհային բնույթի պրոբլեմ: Քանի որ այժմ ոչ մի ժողովրդի համար չկա ավելի էական, ավելի կարևոր հարց, քան խաղաղության պահպանումը, քան յուրաքանչյուր մարդու առաջնագույն իրավունքի՝ ապրելու իրավունքի ապահովումը:*

## 1. ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ, ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՐԿՐՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

*Ընկերնե՛ր:*

*Այդ բոլոր տարիներին կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն, քաղբյուրոն անդուլ ուշադրություն են նվիրել սոցիալիզմի երկրների հետ բարեկամության ու համագործակցության ամրապնդմանը:*

*Նրանց հետ միասին մենք կառուցում ենք նոր, սոցիալիստական աշխարհ, միջպետական հարաբերությունների՝ իսկապես արդարացի, իրավահավասար, եղբայրական հարաբերությունների՝ պատմության մեջ դեռևս չտեսնված տիպ:*

*Հենց այդ ոգով են ընթանում մեր հարաբերությունները սոցիալիստական ընկերակցության երկրների՝ Բուլղարիայի, Հունգարիայի, Վիետնամի, Գերմանական Դեմոկրատական Հանրապետության, Կուբայի, Լաոսի, Մոնղոլիայի, Լեհաստանի, Ռումինիայի, Չեխոսլովակիայի հետ:*

*Սոցիալ-տնտեսական զարգացման, միջազգային քաղաքականության բոլոր խոշոր պրոբլեմների առնչությամբ մեր միջև հաստատվել է հայացքների սկզբունքային միասնություն: Դա եղբայրական կոմունիստական կուսակցությունների մշտական փոխգործողության արգասիքն է, մեր ընդհանուր նվաճումը:*

*Շատ կարևոր է, որ մեր կուսակցությունների ղեկավարության միջև գոյություն ունեն խոր փոխըմբռնում, վստահություն և համաձայնություն:*

*Այդ տարիներին տեղի են ունեցել բարձր մակարդակի երեսունյոթ բարեկամական հանդիպումներ Ղրիմում: Առանց արարողական ձևականությունների, ընկերական մթնոլորտում մենք քննարկել ենք մեր հարաբերությունների զարգացման հեռանկարները, համաշխարհային քաղաքականության հանգուցային պրոբլեմները, նախանշել ապագայի խնդիրները: Յուրաքանչյուր հանդիպում բերում էր ինչ-որ նոր և օգտակար բան: Այդ լավ համագործակցության համար ուզում եմ սրտագին երախտագիտություն հայտնել եղբայրական երկրների ու կուսակցությունների ղեկավարներին:* (Ծափահարություններ):

*Կանոնավոր է եղել կուսակցական-կառավարական պատվիրակությունների փոխանակումը: Պրակտիկա են դարձել կենտկոմների քարտուղարների խորհրդակցությունները միջազգային հարաբերությունների, գաղափարախոսական և կազմակերպական-կուսակցական աշխատանքի հարցերի շուրջը:*



*Բազում թելերով են շաղկապված Սովետական Միության և սոցիալիստական ընկերակցության երկրների կուսակցական կազմակերպությունները: Շաղկապված են բոլոր մակարդակներում՝ սկսած հանրապետություններից, երկրամասերից ու մարզերից մինչև շրջաններն ու խոշոր ձեռնարկությունները: Կենդանի, բեղմնավոր բնույթ է ստացել պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների, արտադրական կոլեկտիվների համագործակցությունը: Կայուն նորմ են դարձել հոգևոր շփումը, սերտ կապերը գաղափարախոսության և կուլտուրայի բնագավառում:*

*Պետությունների հարաբերությունները հնուց ի վեր կոչվել են միջազգային հարաբերություններ: Բայց միայն մեր ժամանակներում, սոցիալիզմի աշխարհում դրանք իրոք դարձել են ժողովուրդների հարաբերություններ: Դրանց անմիջականորեն մասնակցում են միլիոնավոր ու միլիոնավոր մարդիկ: Դա, ընկերնե՛ր, սոցիալիզմի սկզբունքային նվաճումն է, նրա մեծ ծառայությունը մարդկության հանդեպ:* (Ծափահարություններ):

*Մեր համագործակցության ասպարեզն ընդգրկում է նորանոր ոլորտներ: Դրա օրինակը «Ինտերկոսմոս» ծրագիրն է: Եղբայրական երկրների տիեզերագնացներն աշխատում են ո՛չ միայն գիտության և ժողովրդական տնտեսության համար: Նրանք կատարում են նաև քաղաքական հսկայական նշանակություն ունեցող առաքելություն:*

*Թույլ տվեք այս ամբիոնից ջերմորեն ողջունել տիեզերքի հերոսներին՝ սոցիալիզմի երկրների խիզախ զավակներին:* (Երկարատև ծափահարություններ):

*Եղբայրական երկրների մեծամասնության սահմանադրությունների մեջ շեշտվում են Սովետական Միության հետ բարեկամության ու համագործակցության գաղափարները: Դա մեծ վստահություն է մեր երկրի նկատմամբ, և մենք պատասխանում ենք նույնով: ՍՍՀՄ նոր սահմանադրությունը սոցիալիզմի երկրների հետ բարեկամությունը, համագործակցությունը, փոխօգնությունը հռչակում է որպես սովետական արտաքին քաղաքականության անկյունաքար:*

*Անցած ժամանակաշրջանը համոզիչ կերպով ցույց տվեց, թե եվրոպական, ինչպես և ամբողջությամբ վերցրած միջազգային գործերում ինչպիսի ազդեցիկ և բարերար դեր է խաղում Վարշավայի պայմանագրի կազմակերպության և ամենից առաջ նրա Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի գործունեությունը: Ավելի վաղ հարթելով համաեվրոպական խորհրդակցության ճանապարհը, մեր պայմանագրի բարձրագույն քաղաքական մարմինը Բուխարեստում, Մոսկվայում, Վարշավայում գումարած իր նիստերում հանդես եկավ մի շարք նոր նախաձեռնություններով, որոնք իրենց վրա գրավեցին աշխարհի ուշադրությունը: Դրանց գլխավոր նպատակն է պաշտպանել լարվածության թուլացումը, դրան տալ եռանդուն ռիթմ, ինչպես ասում են, երկրորդ շնչառություն:*

*Այդ տարիներին ստեղծվեց մեր համագործակցության մի նոր մարմին՝ արտաքին գործերի մինիստրների կոմիտեն: Արդեն այժմ կարելի է ասել, որ դա իրեն լիովին արդարացրել է. արտաքին քաղաքական գործողությունների համաձայնեցման օպերատիվությունը բարձրացել է:*

*Ներդաշնակորեն էր ընթանում միացյալ զինված ուժերի շինարարությունը: Եվ այստեղ, ինչպես միշտ, լավ աշխատանք կատարեց պաշտպանության մինիստրների կոմիտեն:*

*Կենտրոնական կոմիտեն համագումարին զեկուցում է՝ սոցիալիզմի երկրների ռազմաքաղաքական պաշտպանողական դաշինքը հավատարմորեն է ծառայում խաղաղությանը:* (Ծափահարություններ): *Նա ունի անհրաժեշտ ամեն բան՝ հուսալիորեն պաշտպանելու ժողովուրդների սոցիալիստական նվաճումները: Եվ մենք ամեն ինչ կանենք, որ այդպես լինի նաև այսուհետև:* (Երկարատև ծափահարություններ):

*Ընկերնե՛ր: Մենք հեռու ենք այն բանից, որ արդի սոցիալիստական աշխարհի պատկերը ներկայացնենք համատարած տոնական գույներով: Մեր երկրների զարգացման մեջ լինում են նաև բարդություններ: Էկոնոմիկայի ինտենսիվ զարգացմանը, սոցիալական խոշոր ծրագրերի իրականացմանն անցնելը, կոմունիստական գիտակցության ձևավորումը՝ այս ամենը միանգամից*

քի համար այն չի հանգում գաղափարների հակամարտության։ Նա գործի է դնում միջոցների մի ամբողջ սիստեմ, որոնց նպատակն է քայքայել սոցիալիստական աշխարհը, խարխլել այն։

Իմպերիալիստները և նրանց կամակատարները սիստեմատիկաբար թշնամական կամպանիաներ են մղում սոցիալիստական երկրների դեմ։ Նրանք արատավորում և խեղաթյուրում են այն ամենը, ինչ տեղի է ունենում այդ երկրներում։ Նրանց համար ամենագլխավորն է՝ մարդկանց հեռու վանել սոցիալիզմից։

Վերջին ժամանակների իրադարձությունները կրկին ու կրկին հաստատում են, որ մեր դասակարգային հակառակորդները սովորում են իրենց պարտություններից։ Նրանք առավել նրբին ձևերով և նենգությամբ են գործում սոցիալիզմի երկրների դեմ։

Իսկ այնտեղ, որտեղ իմպերիալիզմի քայքայիչ գործունեությանը գումարվում են ներքին քաղաքականության մեջ եղած սխալներն ու վրիպումները, հող է ստեղծվում սոցիալիզմին թշնամի տարրերի ակտիվացման համար։ Այդպես եղավ եղբայրական Լեհաստանում, որտեղ սոցիալիզմի հակառակորդներն արտաքին ուժերի աջակցությամբ ստեղծելով անարխիա, ձգտում են իրադարձությունների զարգացումը մղել հակահեղափոխական հունը։ Ինչպես նշվեց ԼՄԲԿ Կենտկոմի վերջին պլենումում, Լեհաստանում սպառնալիք է առաջացել սոցիալիստական պետության հիմքերին։

Լեհ ընկերներն այժմ ջանում են հաղթահարել ճգնաժամային իրավիճակը։ Նրանք ձգտում են բարձրացնել կուսակցության մարտունակությունը, ամրապնդել կապերը բանվոր դասակարգի, աշխատավորների հետ, մշակում են լեհական էկոնոմիկայի առողջացման կոնկրետ ծրագիր։

Սոցիալիստական Լեհաստանի համար քաղաքական կարևոր աջակցություն եղավ Վարշավայի պայմանագրի մասնակից երկրների պետությունների ղեկավար գործիչների անցյալ տարվա դեկտեմբերյան հանդիպումը Մոսկվայում։

Այդ հանդիպումը պարզորոշ ցույց տվեց, որ լեհական կոմունիստները, լեհական բանվոր դասակարգը, այդ երկրի աշխատավորները կարող են հաստատ հույս դնել իրենց բարեկամների ու դաշնակիցների վրա. մենք սոցիալիստական Լեհաստանին, եղբայրական Լեհաստանին փորձանքի մեջ չենք թողնի և թույլ չենք տա, որ նրան վնասեն։ (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Լեհաստանի իրադարձությունները վերստին համոզում են, թե կուսակցության համար, նրա ղեկավար դերի ամրապնդման համար որքան կարևոր է զգայուն կերպով ունկնդրել մասսաների ձայնին, վճռականորեն պայքարել բյուրոկրատիզմի, վոլյունտարիզմի ամեն տեսակ դրսևորումների դեմ, ակտիվորեն զարգացնել սոցիալիստական դեմոկրատիան, հավասարակշռված, ռեալիստական քաղաքականություն վարել արտաքին տնտեսական կապերի ասպարեզում։

Համաշխարհային սոցիալիզմի պատմությանը հայտնի են ամեն տեսակ փորձություններ։ Այդ պատմության ընթացքում եղել են թե՛ բարդ, թե՛ ճգնաժամային պահեր։ Բայց կոմունիստները միշտ էլ համարձակորեն են դիմագրավել հակառակորդի գրոհները և հաղթել։ (Ծափահարություններ): Այդպես եղել է, այդպես էլ կլինի։ (Երկարատև ծափահարություններ): Եվ թող ոչ ոք չկասկածի մեր շահերն ապահովելու, ժողովուրդների սոցիալիստական նվաճումները պաշտպանելու մեր ընդհանուր վճռականությանը։

Մենք պայքարում ենք խաղաղության և ժողովուրդների անվտանգության արդար գործի համար, աշխատավոր մարդկանց շահերի համար։ Մեր կողմն է մարքս-լենինյան ուսմունքի ճշմարտությունը։ Մեր ուժը միասնությունն ու համախմբվածությունն է։

Անցյալ համագումարում ասվեց այն մասին, որ տեղի է ունենում սոցիալիստական պետությունների մերձեցման պրոցես։ Այդ պրոցեսը շարունակում է զարգանալ։ Բայց այն չի վերացնում սոցիալիզմի երկրների ազգային յուրահատկությունը, նրանց պատմական առանձնահատկությունները։ Նրանց հասարակական կյանքի ձևերի բազմազանության, էկոնոմիկայի կազմակերպման



մեջ պետք է տեսնել այն, ինչը իրականում կա՝ սոցիալիստական ապրելակերպի հաստատման ուղիների և մեթոդների հարստությունը։

Շարունակում են զարգանալ մեր հարաբերությունները նաև Վարշավայի պայմանագրի ու ՏՓԽ-ի մեջ չմտնող սոցիալիստական երկրների հետ։

Շատ բնագավառներում առաջ է ընթանում սովետա-հարավսլավական համագործակցությունը։ Համաձայնեցված սկզբունքներն ու պայմանավորվածությունները այդ համագործակցության հետագա ընդլայնման լավ հիմք են։ Սովետա-հարավսլավական բարեկամության արմատները խորն են, և այդ բարեկամության ապագան անտարակուսելի է։

Սովետական Միությունը համերաշխ է այն պայքարին, որ Կորեական Ժողովրդադեմոկրատական Հանրապետությունը մղում է առանց արտաքին միջամտության հայրենիքի խաղաղ դեմոկրատական միավորման համար, և ձգտում է խորացնել ու հարստացնել կապերը նրա հետ։

Հատկապես հարկ է խոսել Չինաստանի մասին։ Վերջին երկու տասնյակ տարում ՉԺՀ-ի սոցիալ-տնտեսական զարգացման փորձը մի ծանր դաս է, որը ցույց է տալիս, թե ինչի է հանգեցնում ինչպես ներքին, այնպես էլ միջազգային քաղաքականության մեջ սոցիալիզմի սկզբունքների, դրա էության խեղաթյուրումը։

Իրենք՝ Չինաստանի ներկայիս ղեկավարները, իրենց երկրի այսպես կոչված կուլտուրական հեղափոխության ժամանակաշրջանի կարգերն անվանում են «ամենադաժան ֆեոդալաֆաշիստական դիկտատուրա»։ Մենք ոչինչ չունենք ավելացնելու այդ գնահատականին։

Չինաստանի ներքին քաղաքականության մեջ այժմ տեղի են ունենում փոփոխություններ։ Դրանց իսկական իմաստը դեռ ցույց կտա ժամանակը։ Այն ցույց կտա, թե չինական ներկայիս ղեկավարությանը ինչ չափով կհաջողվի հաղթահարել մաոյական ժառանգությունը։ Բայց Պեկինի արտաքին քաղաքականության լավացման որևէ փոփոխության մասին, ցավոք, առայժմ խոսելու հարկ չկա։ Այդ քաղաքականությունն առաջվա պես նպատակամղված է միջազգային իրադրության սրմանը, միակցվում է իմպերիալիզմի քաղաքականության հետ։ Դա, իհարկե, Չինաստանին չի վերադարձնի զարգացման բարենպաստ ուղի։ Իմպերիալիստները սոցիալիզմի բարեկամներ չեն լինի։

Չինաստանի հետ ռազմաքաղաքական կապերն ընդլայնելու՝ ԱՄՆ-ի, Ճապոնիայի, ՆԱՏՕ-ի մի շարք երկրների պատրաստակամության ետևում թաքնվում է մի շատ հասարակ նկատառում— Սովետական Միության, սոցիալիստական ընկերակցության նկատմամբ Չինաստանի թշնամանքն օգտագործել իրենց սեփական, իմպերիալիստական շահերի օգտին։ Վտանգավո՜ր խաղ։

Դե, իսկ ինչ վերաբերում է չին ժողովրդին, ապա մենք խորապես համոզված ենք՝ նրա իսկական շահերին կհամապատասխաներ խաղաղության քաղաքականությունը, միայն խաղաղության և մյուս պետությունների հետ նորմալ հարաբերությունների քաղաքականությունը։

Եթե սովետա-չինական հարաբերությունները սառեցված են մնում, ապա այստեղ պատճառը մեր դիրքավորումը չէ։ Սովետական Միությունը չի որոնել և չի որոնում առճակատում Չինական Ժողովրդական Հանրապետության հետ։ Մենք հետևում ենք ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների սահմանած կուրսին և կուզենայինք նրա հետ մեր կապերը խարսխել բարիդրացիական հիմքի վրա։ Ուժի մեջ են մնում Չինաստանի հետ հարաբերությունները նորմալացնելու նպատակով արված մեր առաջարկությունները, ինչպես որ անշեղ են մնում չին ժողովրդի նկատմամբ հարգանքի ու բարեկամության մեր զգացմունքները։

Ընկերնե՛ր։ Ինչպես տեսնում եք, Կենտրոնական կոմիտեն ամբողջությամբ վերցրած հսկայածավալ աշխատանք է կատարել սոցիալիստական երկրների հետ մեր հարաբերությունները զարգացնելու և խորացնելու նպատակով։ Էկոնոմիկայի, կուլտուրայի զարգացման, հասարակական հարաբերությունների, սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործման ասպարեզում՝ բառացիորեն բոլոր բնագավառներում համաշխարհային սոցիալիզմը հաստատակամորեն առաջ է ընթանում։ Եվ մենք՝ սովետական կոմունիստներս, հպարտա-

նում ենք այն դերով, որ դրանում խաղում են Լենինի կուսակցությունը, մեծ Հոկտեմբերի հայրենիքը: (Երկարատև ծափահարություններ):

## 2. ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԱԶԱՏԱԳՐՎԱԾ ԵՐԿՐՆԵՐԻ ՀԵՏ

Ընկերնե՛ր: Հաշվետու ժամանակաշրջանում կուսակցության միջազգային գործունեության կարևոր արդյունքներից մեկը գաղութային ճնշումից ազատագրված երկրների հետ համագործակցության նկատելի ընդլայնումն է:

Այդ երկրները շատ տարբեր են: Դրանցից մի քանիսն ազատագրումից հետո ընթացան հեղափոխական-դեմոկրատական ուղիով: Այլ երկրներում հաստատվեցին կապիտալիստական հարաբերություններ: Մի քանիսը վարում են իրոք անկախ քաղաքականություն, մյուսներն այսօր ընթանում են իմպերիալիզմի քաղաքականության ֆարվատերում: Մի խոսքով, պատկերը բավական խայտաբղետ է:

Կսկսեմ սոցիալիստական կողմնորոշում ունեցող պետություններից, այն երկրներից, որոնք ընտրել են սոցիալիստական զարգացման ուղին: Դրանց թիվն ավելացել է: Պրոգրեսիվ ուղիով այդ երկրների զարգացումը, իհարկե, տեղի է ունենում ոչ միատեսակ, այն ընթանում է բարդ պայմաններում: Բայց հիմնական ուղղությունները նման են: Դա իմպերիալիստական մոնոպոլիաների, տեղական խոշոր բուրժուազիայի և ֆեոդալների դիրքերի աստիճանական վերացումն է, օտարերկրյա կապիտալի գործունեության սահմանափակումը: Դա էկոնոմիկայի մեջ ժողովրդական պետության հրամանատարական բարձունքների ապահովումն է և անցումը դեպի արտադրաուժերի պլանային զարգացումը, գյուղում կոոպերատիվ շարժման խրախուսումը: Դա հասարակական կյանքում աշխատավոր մասսաների դերի բարձրացումն է, պետական ապարատի աստիճանական ամրապնդումը ժողովրդին նվիրված ազգային կադրերով: Դա այդ երկրների արտաքին քաղաքականության հակաիմպերիալիստական բնույթն է: Դրանցում ամրապնդվում են հեղափոխական կուսակցությունները, որոնք արտահայտում են աշխատավորների լայն մասսաների շահերը:

Սովետական Միությունը հաշվետու ժամանակաշրջանում բարեկամության և համագործակցության պայմանագրեր է կնքել Անգոլայի, Եթովպիայի, Մոզամբիկի, Աֆղանստանի և Եմենի Ժողովրդական Դեմոկրատական Հանրապետության հետ: Վերջերս բարեկամության ու համագործակցության պայմանագիր ստորագրվեց Սիրիայի հետ: Վստահ եմ, որ այն լավ կծառայի սովետա-սիրիական բարեկամության հետագա զարգացմանը և Մերձավոր Արևելքում արդարացի խաղաղության հասնելու գործին:

Ազատագրված երկրների հետ մենք զարգացնում ենք տնտեսական և գիտատեխնիկական երկուստեք շահավետ լայն համագործակցություն: Մեր հարաբերություններում մեծ տեղ է գրավում այդ պետություններում տնտեսական խոշոր օբյեկտների շինարարությունը, որին ՍՍՀՄ-ը մասնակցում է այս կամ այն ձևով:

Անցած տարիներին ավարտված օբյեկտների թվում քիչ չեն խոշոր և համապատասխան երկրների էկոնոմիկայի համար նույնիսկ առաջատար օբյեկտները: Դրանցից են, օրինակ, Սիրիայում Աս-Սաուրի հիդրոէներգետիկ կոմպլեքսը, որը տալիս է երկրում արտադրվող էլեկտրաէներգիայի ավելի քան 70 տոկոսը, մետալուրգիական գործարանի երկրորդ հերթը Ալժիրում, որը նրա կարողությունը հասցրել է 2 միլիոն տոննա պողպատի, 2,5 միլիոն տոննա բոքսիտների հանույթ ապահովող ձեռնարկությունը՝ Գվինեայում և այլն:

Մեր երկիրն իր հնարավորությունների համեմատ ազատագրված շատ երկրների աջակցություն է ցույց տալիս նաև կադրերի՝ ինժեներների, տեխնիկների, որակյալ բանվորների, բժիշկների, ուսուցիչների պատրաստման գործում:



Ասիայի և Աֆրիկայի երկրների շինարարական հրապարակներում, արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ, հիվանդանոցներում և ուսումնական հաստատություններում անձնվիրաբար աշխատում են տասնյակ հազարավոր սովետական մասնագետներ: Նրանք արժանի կերպով են ներկայացնում իրենց սոցիալիստական մեծ հայրենիքը: Մենք հպարտանում ենք նրանցով և նրանց հղում հաջողությունների սրտագին բարեմաղթություններ: (Երկարատև ծափահարություններ):

Մյուս եղբայրական երկրների հետ մեկտեղ մենք օգնում ենք նաև ազատագրված պետությունների պաշտպանունակության ամրապնդմանը, երբ նրանք դիմում են այդպիսի խնդրանքներով: Դա եղավ, օրինակ, Անգոլայում և Եթովպիայում: Այդ երկրներում ժողովրդական հեղափոխությունների հետ փորձում էին հաշվեհարդար տեսնել ներքին հակահեղափոխությունը խրախուսելու կամ դրսից ագրեսիա կատարելու օգնությամբ: Մենք դեմ ենք հեղափոխության արտահանմանը, բայց չենք կարող համաձայնել նաև հակահեղափոխության արտահանմանը: (Ծափահարություններ):

Իմպերիալիզմը իսկական չհայտարարված պատերազմ էր սանձազերծել աֆղանական հեղափոխության դեմ: Դա ուղղակի սպառնալիք էր ստեղծել նաև մեր հարավային սահմանի անվտանգության համար: Այդպիսի դրությունը մեզ հարկադրեց ցույց տալ ռազմական օգնություն, որի մասին խնդրել էր բարեկամ երկիրը:

Աֆղանստանի թշնամիների պլանները ձախողվեցին: Ընկեր Բաբրակ Քարմալի գլխավորած Աֆղանստանի ժողովրդադեմոկրատական կուսակցության և կառավարության կշռադատված, ազգային շահերին համապատասխանող քաղաքականությունն ամրապնդեց ժողովրդական իշխանությունը:

Ինչ վերաբերում է սովետական զինվորական կոնտինգենտին, ապա մենք պատրաստ կլինենք այն դուրս բերել՝ համաձայնեցնելով Աֆղանստանի կառավարության հետ: Դրա համար պետք է լիովին դադարեցվի հակահեղափոխական բանդաների ուղարկումը Աֆղանստան: Դա պետք է վավերագրվի Աֆղանստանի և նրա հարևանների պայմանավորվածություններով: Հարկավոր են հուսալի երաշխիքներ, որ նոր ինտերվենցիա չի լինի: Այսպիսին է Սովետական Միության սկզբունքային դիրքավորումը, և մենք հաստատորեն կհետևենք դրան: (Ծափահարություններ):

Առանձնահատուկ բնույթ ունի Իրանի հեղափոխությունը, որը դարձավ միջազգային կյանքի վերջին տարիների խոշոր իրադարձությունը: Իր ողջ բարդությամբ և հակասականությամբ հանդերձ դա իր հիմքում հակաիմպերիալիստական հեղափոխություն է, թեև ներքին և արտաքին ռեակցիան ձգտում է փոխել դրա այդ բնույթը:

Իրանական ժողովուրդը որոնում է ազատության և ծաղկման իր ուղին: Մենք անկեղծորեն հաջողություն ենք մաղթում նրան այդ բանում և պատրաստ ենք Իրանի հետ զարգացնելու բարի հարաբերություններ իրավահավասարության և, իհարկե, փոխադարձության հիմունքներով: (Ծափահարություններ):

Արևելքի մի քանի երկրներում վերջին ժամանակներս ակտիվորեն առաջ են քաշվում իսլամական լոզունգներ: Մենք՝ կոմունիստներս, հարգանքով ենք վերաբերվում իսլամը, ինչպես նաև այլ կրոններ դավանող մարդկանց կրոնական համոզմունքներին: Գլխավորն այն է, թե ինչպիսի նպատակներ են հետապնդում այս կամ այն լոզունգը հռչակող ուժերը: Իսլամի դրոշի ներքո կարող է ազատագրական պայքար ծավալվել, այդ է վկայում պատմության փորձը, այդ թվում նաև ամենավերջինը: Բայց հենց այդ փորձն էլ ասում է, որ իսլամական լոզունգներն օգտագործում է նաև հակահեղափոխական խռովություններ բարձրացնող ռեակցիան: Հետևաբար, ամբողջ բանն այն է, թե ինչպիսին է այս կամ այն շարժման ռեալ բովանդակությունը:

Ընկերնե՛ր: Ազատագրված երկրների հետ Սովետական Միության փոխհարաբերությունների մեջ, իհարկե, մեծ տեղ է գրավում մեր համագործակցությունը Հնդկաստանի հետ: Մենք ողջունում ենք միջազգային գործերում այդ տերության դերի մեծացումը: Հնդկաստանի հետ մեր կապերը շարունակում են

ամրապնդվել։ Սովետա-հնդկական բարեկամությունը մեր երկու երկրներում արմատացած ժողովրդական ավանդույթ է դարձել։ (Ծափահարություններ)։

Դելիում վերջերս պրեմիեր-մինիստր Ինդիրա Գանդիի և հնդկական մյուս գործիչների հետ վարված բանակցությունների շնորհիվ սովետա-հնդկական հարաբերությունների ամբողջ կոմպլեքսը էապես առաջ մղվեց։

Խաղաղասեր անկախ Հնդկաստանի հետ փոխգործողությունը այսուհետ ևս կդառնա սովետական արտաքին քաղաքականության կարևոր ուղղություններից մեկը։

Մենք խոչընդոտներ չենք տեսնում բարի համագործակցություն հաստատելու Ինդոնեզիայի հետ, ինչպես նաև ԱՍԵԱՆ-ի անդամ մյուս երկրների հետ։

Անցած հինգ տարում Աֆրիկայում, Կարիբյան ավազանում և Օվկիանիայում անկախություն ստացան տասը նոր պետություններ, որոնք անմիջապես ճանաչվեցին Սովետական Միության կողմից։ Զիմբաբվեի Հանրապետության ծնունդը, Նամիբիայում, իսկ հիմա արդեն նաև Հարավ-աֆրիկյան Հանրապետությունում ազատագրական պայքարի աճող թափը ակնառու կերպով ցույց են տալիս, որ «դասական» գաղութարարների և ռասիստների տիրապետությունը մոտենում է վախճանին։

Իմպերիալիստներին ձեռնտու չէ ազատագրված երկրների անկախության ամրապնդումը։ Հազարավոր ուղիներով ու եղանակներով նրանք փորձում են իրենց հետ շաղկապել այդ երկրներին, որպեսզի ավելի ազատորեն տնօրինեն նրանց բնական հարստությունները, իրենց ստրատեգիական նպատակների համար օգտագործեն այդ երկրների տերիտորիաները։ Ընդ որում, լայնորեն օգտագործվում է գաղութարարների՝ «բաժանիր, որ տիրես» վաղեմի մեթոդը։

Արևմուտքը հենց այդպիսի դիրքերից է մոտենում նաև արդեն հինգ ամիս մղվող իրանա-իրաքյան պատերազմին, այդ պետությունների շահերի տեսակետից բացարձակապես անիմաստ պատերազմին։ Բայց իմպերիալիզմին միանգամայն շահավետ պատերազմին, որը քնի մեջ անգամ երազում է, թե ինչպես վերականգնի իր դիրքերն այդ շրջանում։ Կցանկանայինք հուսալ, որ թե՛ Իրաքում, թե՛ Իրանում դրանից պատշաճ հետևություններ կանեն։

Սովետական Միությունը վճռականապես հանդես է գալիս այդ եղբայրասպան պատերազմի շուտափույթ դադարեցման, կոնֆլիկտի քաղաքական կարգավորման օգտին։ Մենք ձգտում ենք նաև գործնականում նպաստել դրան։

Այժմ մերձավորարևելյան պրոբլեմի մասին։ Տիրապետող դրության ձգտելով Մերձավոր Արևելքում, ԱՄՆ-ը կանգնեց Քեմպ Դեվիդի քաղաքականության ուղու վրա, արաբական աշխարհը պառակտելու և Իսրայելի ու Եգիպտոսի միջև սեպարատ գործարք կազմակերպելու ուղու վրա։ Ամերիկյան դիվանագիտությանը չհաջողվեց այդ սեպարատ հակաարաբական գործարքը վերածել կապիտուլյանտական տիպի ավելի լայն համաձայնության։ Բայց նա հաջողության հասավ մի այլ բանում. նորից սրվեց իրադրությունը ռեգիոնում։ Մերձավորարևելյան կարգավորումը նահանջեց ապրեց։

Իսկ ինչպե՞ս վարվել հետագայում։ Մեզ թվում է, որ ժամանակն է գործը մեռյալ կետից շարժելու։ Ժամանակն է վերադառնալու արդարացի և ռեալիստական հիմքի վրա համապարփակ կարգավորման ազնիվ կոլեկտիվ որոնումների։ Ստեղծված պայմաններում դա կարելի կլիներ անել, ասենք, հատկապես հրավիրված միջազգային կոնֆերանսի շրջանակներում։

Սովետական Միությունը պատրաստ է կոնստրուկտիվ ոգով, բարյացակամության դիրքերից մասնակցելու այդպիսի աշխատանքի։ Մենք պատրաստ ենք դա անելու մյուս շահագրգռված կողմերի՝ արաբների հետ (ներառյալ, իհարկե, Պաղեստինի ազատագրման կազմակերպությունը), Իսրայելի հետ համատեղ։ Մենք պատրաստ ենք նման որոնումներ կատարելու ԱՄՆ-ի հետ համատեղ։ Մենք, հիշեցնեմ, այդ ուղղությամբ որոշակի փորձ ունեինք մի քանի տարի առաջ։ Մենք պատրաստ ենք համագործակցելու եվրոպական պետությունների հետ, բոլոր նրանց հետ, ովքեր անկեղծ ձգտում են ցույցաբերում արդարացի և կայուն խաղաղություն ապահովելու Մերձավոր Արևելքում։

Ըստ երևույթին, այս ամբողջ հարցում օգտակար դեր կարող է շարունակել խաղալ նաև ՄԱԿ-ը։



Ինչ վերաբերում է գործի էությանը, ապա մենք առաջվա պես համոզված ենք՝ Մերձավոր Արևելքի իսկական խաղաղության համար պետք է դադարեցվի 1967 թվականին զավթված արաբական բոլոր տերիտորիաների իսրայելական օկուպացումը։ Պետք է իրականացվեն Պաղեստինի արաբ ժողովրդի անկապտելի իրավունքները, ընդհուպ մինչև սեփական պետության ստեղծումը։ Անհրաժեշտ է ապահովել այդ շրջանի բոլոր պետությունների, այդ թվում՝ Իսրայելի անվտանգությունն ու սուվերենությունը։ Սրանք են հիմնական սկզբունքները։ Իսկ մանրամասները, իհարկե, կարող են բանակցությունների առարկա լինել։

Միջազգային հարաբերությունների կարևոր գործոնը եղել և մնում է չմիանալու շարժումը, որը հենց այս տարի նշում է իր գոյության քսանամյակը։ Դրա ուժը իմպերիալիզմի և գաղութատիրության, պատերազմի և ագրեսիայի դեմ ուղղված լինելն է։ Մենք վստահ ենք, որ համաշխարհային քաղաքականության մեջ չմիանալու շարժման դերի հետագա բարձրացման բանալին,— իսկ դա մենք կողջունեինք,— դրա հավատարմությունն է իր այդ հիմնարար սկզբունքներին։

70-ական թվականների կեսերին նախկին գաղութային երկրները առաջադրեցին միջազգային նոր տնտեսական կարգի հարցը։ Դեմոկրատական հիման վրա, իրավահավասարության հիմունքներով միջազգային տնտեսական հարաբերությունների վերակառուցումը պատմականորեն օրինաչափ է։ Այստեղ շատ բան կարող է արվել և պետք է արվի։ Բայց, իհարկե, չի կարելի, ինչպես դա երբեմն անում են, հարցը հանգեցնել պարզապես «հարուստ հյուսիսի» և «աղքատ հարավի» միջև եղած տարբերություններին։ Մենք պատրաստ ենք նպաստելու և գործնականում նպաստում ենք միջազգային արդարացի տնտեսական հարաբերությունների հաստատմանը։

Ոչ ոք, ընկերնե՛ր, չպետք է կասկածի՝ ՍՄԿԿ-ն այսուհետ ևս հետևողականորեն կվարի ազատագրված երկրների հետ ՍՍՀՄ-ի համագործակցությունը զարգացնելու, համաշխարհային սոցիալիզմի և ազգային-ազատագրական շարժման դաշինքն ամրապնդելու կուրս։ (Երկարատև ծափահարություններ)։

## 3. ՍՄԿԿ-Ն ԵՎ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ

Այժմ համաշխարհային կոմունիստական և բանվորական շարժման մեջ ՍՄԿԿ-ի կիրառած գծի մասին։

Ութսունական թվականների սահմանագծին միջազգային բանվոր դասակարգը և նրա քաղաքական ավանգարդը՝ կոմունիստական ու բանվորական կուսակցությունները, մոտեցան հասունացած։ Մոտեցան որպես աշխատավորների իրավունքների, խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար մղվող պայքարի ակտիվ մարտիկներ։

Կոմունիստական շարժումը շարունակում էր ընդլայնել իր շարքերը, ամրապնդել իր ազդեցությունը մասսաների շրջանում։ Այժմ կոմկուսները ակտիվորեն գործում են աշխարհի 94 երկրներում։ Միմիայն Արևմտյան Եվրոպայում վերջին տասը տարում նրանց շարքերն են մտել մոտավորապես 800 հազար նոր մարտիկներ։ Մի՞թե սա կոմունիստական գաղափարների անհաղթահարելի ձգողական ուժի վկայությունը չէ։ (Ծափահարություններ)։

Մեր կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն ակտիվ աշխատանք էին կատարում եղբայրական կուսակցությունների հետ համակողմանի գործակցությունն է՛լ ավելի ընդլայնելու և խորացնելու նպատակով։ Հաշվետու ժամանակաշրջանում միայն քաղբյուրոյի անդամներն ու անդամության թեկնածուները, Կենտրոնական կոմիտեի քարտուղարներն ընդունել են մի քանի հարյուր կուսակցական պատվիրակությունների։ ՍՄԿԿ-ի ներկայացուցիչները,

Փարիզի հանդիպումը։ Դա նպաստեց այն պայքարի ակտիվացմանը, որ մայրցամաքի ժողովրդական մասսաները մղում են Արևմտյան Եվրոպայում միջուկային լիցքերով ամերիկյան նոր հրթիռներ տեղաբաշխելու վերաբերյալ ՆԱՏՕ բլոկի որոշման կապակցությամբ Եվրոպայի վրա կախված լուրջ վտանգի դեմ։

Հաշվետու ժամանակաշրջանում ամրապնդվեց ՍՄԿԿ-ի համագործակցությունը մյուս դեմոկրատական ուժերի հետ։ Մասնավորապես առավել զարգացան մեր կապերը Ֆինլանդիայի, Բելգիայի, Շվեդիայի, Ճապոնիայի, Իսպանիայի և մի շարք այլ երկրների սոցիալիստական ու սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների հետ՝ գլխավորապես պատերազմական վտանգի դեմ մղվող պայքարի հարցերում։ Կարևոր նշանակություն ունեցան կոնտակտները սոցինտերնի ղեկավարության հետ, մեր մասնակցությունը զինաթափմանը նվիրված սոցինտերնի կոնֆերանսին, կոնտակտները այդ պրոբլեմի գծով սոցինտերնի ստեղծած աշխատանքային խմբի հետ, նրա պատվիրակության ընդունելությունը ՍՄԿԿ Կենտկոմում։

Ժամանակակից սոցիալ-դեմոկրատիան քաղաքական զգալի կշիռ ունի։ Նա կարող է ավելի շատ բան անել ժողովուրդների կենսական շահերի պաշտպանության և ամենից առաջ՝ խաղաղության ամրապնդման, միջազգային իրադրության առողջացման համար, ֆաշիզմին և ռասիզմին, աշխատավորների քաղաքական իրավունքների վրա ռեակցիայի հարձակմանը հակահարված տալու համար։ Սակայն պրակտիկայում սոցիալ-դեմոկրատիայի պարագլուխները բնավ միշտ չէ, որ գործում են այդ ուղղությամբ։

Նրանցից շատերը վարակվել են հակակոմունիզմի վիրուսով։ Ոմանք հանդուրժում են, որ իրենց ներքաշեն իմպերիալիզմի կողմից սոցիալիստական երկրների դեմ կազմակերպվող կամպանիաների մեջ և, վկայակոչելով այսպես կոչված Ատլանտյան համերաշխությունը, արդարացնում են սպառազինությունների մրցավազքը։ Հասկանալի է, որ այդպիսի քաղաքականությունը չի համապատասխանում աշխատավորների շահերին։ Մենք այն վճռականորեն դատապարտում ենք։

Բայց մենք ակտիվորեն կպաշտպանենք խաղաղության և դեմոկրատիայի գործի համար օգտակար բոլոր քայլերը։ Միջազգային իրադրության այժմյան բարդացման պայմաններում մեզ համար կարևոր է թվում սոցիալ-դեմոկրատների հետ, արհմիութենական, կրոնական շրջանների հետ, բոլոր դեմոկրատական, խաղաղասեր ուժերի հետ համագործակցությունը պատերազմի կանխման և խաղաղության ամրապնդման հարցերում։ Այդպիսի համագործակցության լավ օրինակ դարձավ խաղաղության օգտին ժողովուրդների համաշխարհային պառլամենտը, որ գումարվեց անցյալ տարի Սոֆիայում։

Սովետական կոմունիստները ողջունում են կոմկուսների հաջողությունները իրենց շարքերի ընդլայնման, մասսաների հետ կապերի ամրապնդման, բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների շահերի, նրանց դեմոկրատական իրավունքների և ազատությունների պաշտպանության գործում, մոնոպոլիաների ամենազորությունը սահմանափակելու, միլիտարիզմի աճը սանձահարելու համար, իրենց երկրների զարգացման սոցիալիստական հեռանկարի համար մղվող պայքարում։

Ընկերնե՛ր։ Տեռորի և հալածանքի միջով, բանտերի և համակենտրոնացման ճամբարների փշալարերի միջով, ժողովուրդների բարօրության համար կատարած անձնվեր և հաճախ շատ ծանր ամենօրյա աշխատանքով կապիտալի երկրների կոմունիստները բերում են իրենց հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի իդեալներին։ (Ծափահարություններ)։

Մենք ջերմ համերաշխություն ենք հայտնում մեր կոմունիստ եղբայրներին, որոնք տառապում են ֆաշիստական դիկտատուրաների բանտախցերում, ենթարկվում ոստիկանական ռեպրեսիաների, ծանր պայքար մղում ընդհատակում։ Համերաշխություն նրանց նկատմամբ, ում խտրականության են ենթարկում, քաղաքացիական ու քաղաքական իրավունքներից զրկում միայն իրենց



համոզմունքների համար, բանվոր դասակարգի կուսակցությանը պատկանելու համար։ (Ծափահարություններ)։

Փա՛ռք ու պատիվ կոմունիստներին՝ ժողովրդի գործի համար պայքարող խիզախ մարտիկներին։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

# 4. ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԵՏ։ ՀԱԿԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆԸ ԱԳՐԵՍԻԱՅԻ ՈՒԺԵՐԻՆ։ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՈՒ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Ընկերնե՛ր։ Հաշվետու ժամանակաշրջանում ՍՍՀՄ-ը շարունակում էր ակտիվորեն վարել կապիտալիստական պետությունների հետ խաղաղ գոյակցության և փոխշահավետ համագործակցության, իմպերիալիզմի ագրեսիվ ոտնձգություններին հաստատուն հակահարված տալու լենինյան քաղաքականությունը։

Այդ տարիներին տեղի ունեցավ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացում։ Կապիտալիզմը, իհարկե, չքարացավ իր զարգացման մեջ։ Բայց այն ապրում է վերջին տասը տարում արդեն երրորդ տնտեսական անկումը։

Չտեսնված մասշտաբներ է ստացել ինֆլյացիան։ 1970 թվականից զարգացած կապիտալիստական երկրներում գները բարձրացել են միջին հաշվով 2,3 անգամ, այդ թվում 1975 թվականից՝ մեկուկես անգամ։ Ինֆլյացիայի աճի կորագիծն ավելի ու ավելի վերձիգ է դառնում։ Պատահական չէ նաև, որ Ամերիկայի Միացյալ Նահանգների նոր պրեզիդենտը, ստանձնելով պաշտոնը, խոստովանեց, որ ԱՄՆ-ը տառապում է «ազգային պատմության ընթացքում ինֆլյացիայի ամենավատթար ժամանակահատվածներից մեկից», որ «ինֆլյացիան սպառնում է սասանել» միլիոնավոր ամերիկացիների «կյանքի բուն հիմքերը»։

Ամենայն պարզորոշությամբ երևում է, թե որքան քիչ է օգնում կապիտալիստական էկոնոմիկայի պետական կարգավորումը։ Միջոցներ ձեռնարկելով ինֆլյացիայի դեմ, բուրժուական կառավարությունները նպաստում են արտադրության լճացմանը և գործազրկության աճին. աշխատելով կասեցնել արտադրության ճգնաժամային անկումը, նրանք է՛լ ավելի են սաստկացնում ինֆլյացիան։

Նկատելիորեն սրվել են սոցիալական հակասությունները։ Կապիտալիստական հասարակության պայմաններում արտադրության մեջ գիտատեխնիկական նորագույն նվաճումների կիրառումը շուռ է գալիս աշխատավորների դեմ, միլիոնավոր մարդկանց դուրս է շպրտում ֆաբրիկաների և գործարանների դարպասներից։ Մեկ տասնամյակում զարգացած կապիտալիստական երկրներում գործազուրկների բանակը կրկնապատկվել է։ 1980 թվականին այն կազմում էր 19 միլիոն մարդ։

Ինչ-որ սոցիալական ռեֆորմների միջոցով դասակարգային պայքարի շիկացումը նվազեցնելու փորձերը նույնպես հաջողություն չեն ունենում։ Տասնամյակում գործադուլների մասնակիցների թիվը աճել է ավելի քան մեկ երրորդով, հասնելով, միայն պաշտոնական տվյալներով, քառորդ միլիարդ մարդու։

Սրվում են միջիմպերիալիստական հակասությունները։ Ուժեղանում է պայքարը շուկաների, հումքի և էներգիայի աղբյուրների համար։ Ճապոնական

և արևմտաեվրոպական մոնոպոլիաներն ավելի ու ավելի հաջողությամբ են մրցակցում ամերիկյան կապիտալի հետ, այդ թվում ԱՄՆ-ի ներքին շուկայում: 70-ական թվականներին համաշխարհային արտահանության մեջ ԱՄՆ-ի բաժինը կրճատվեց գրեթե 20 տոկոսով:

Այդ դժվարությունները, որ ապրում է կապիտալիզմը, ազդում է նաև նրա քաղաքականության վրա, այդ թվում նաև արտաքին քաղաքականության վրա: Սրվել է պայքարը կապիտալիստական երկրների արտաքին քաղաքական կուրսի հիմնական հարցերի շուրջը: Վերջին ժամանակներս նկատելիորեն ակտիվացել են լարվածության թուլացման, սպառազինությունների սահմանափակման, Սովետական Միության և սոցիալիզմի մյուս երկրների հետ հարաբերությունների բարելավման հակառակորդները:

Արկածախնդրություն, իրենց նեղ-շահադիտական նպատակների համար մարդկության կենսական շահերը խաղաքարտի վրա դնելու պատրաստակամություն, ահա թե ինչն է հատկապես մերկ ձևով դրսևորվում իմպերիալիզմի առավել ագրեսիվ շրջանների քաղաքականության մեջ: Լիակատար արհամարհանք ցուցաբերելով ժողովուրդների իրավունքների և իղձերի նկատմամբ, նրանք փորձում են ժողովրդական մասսաների ազատագրական պայքարը պատկերել որպես «տեռորիզմի» դրսևորում: Նրանք հիրավի նպատակ են դրել հասնել անհասանելիին՝ պատնեշ կանգնեցնել աշխարհում առաջադիմական փոփոխությունների ճանապարհին, իրենց վերադարձնել ժողովուրդների բախտը տնօրինողների դերը:

Աննախադեպ աճում են ռազմական ծախսերը: ԱՄՆ-ում դրանք հասել են տարեկան հարյուր հիսուն միլիարդ դոլարի: Բայց այսպիսի աստղաբաշխական թվերն էլ ձեռնտու չեն ամերիկյան ռազմաարդյունաբերական կոմպլեքսին, այն պահանջում է ավելին: Տեղի տալով Վաշինգտոնի պահանջներին, ՆԱՏՕ-ի գծով ԱՄՆ-ի դաշնակիցները նույնպես, թեև մի քանիսը միանգամայն տհաճությամբ, պարտավորվել են համարյա մինչև ներկա հարյուրամյակի վերջը ավտոմատ կերպով մեծացնել ռազմական հատկացումները:

Այդ հսկայական միջոցների բավական մեծ մասը հատկացվում է ստրատեգիական միջուկային զենքի նոր տեսակների առավել արագ զարգացմանը: Դրանց ստեղծումն ուղեկցվում է խաղաղության գործի համար վտանգավոր այնպիսի ռազմական դոկտրինաների առաջադրումով, ինչպիսին է Քարտերի տխրահռչակ դիրեկտիվը: Մարդկանց ուզում են ներշնչել, թե իբր միջուկային պատերազմը կարող է սահմանափակ լինել: Ուզում են նրանց հաշտեցնել այդպիսի պատերազմի թույլատրելիության մտքի հետ:

Բայց չէ՞ որ դա նշանակում է ուղղակի խաբել ժողովուրդներին: Չէ՞ որ ըստ ամերիկյան հասկացողությունների «սահմանափակ» միջուկային պատերազմը, ասենք, Եվրոպայում հենց սկզբից կնշանակեր եվրոպական քաղաքակրթության անխուսափելի կործանում: Հենց իրենք՝ Միացյալ Նահանգներն էլ, իհարկե, չէին կարող հեռու մնալ պատերազմի բոցից: Պարզ է, որ նման պլաններն ու «դոկտրինաները» լուրջ սպառնալիք են բոլոր ժողովուրդների համար, ներառյալ նաև ամերիկյան ժողովուրդը: Այդ պլանները դատապարտման են արժանանում աշխարհում ամենուրեք: Ժողովուրդները վճռականորեն դրանց ասում են՝ «ո՛չ»: (Ծափահարություններ):

Իմպերիալիստական շրջանները մյուս պետությունների և ժողովուրդների վերաբերմամբ մտածում են տիրապետության և հարկադրանքի կատեգորիաներով:

Մոնոպոլիաներին հարկավոր են ուրիշի նավթը, ուրանը, գունավոր մետաղները, և ահա ԱՄՆ-ի «կենսական շահերի» ոլորտ են հայտարարվում Մերձավոր Արևելքը, Աֆրիկան, Հնդկական օվկիանոսը: Այդ տեղերն է ակտիվորեն ճեղքում-դուրս գալիս ԱՄՆ-ի ռազմական մեքենան և մտադրվում հաստատվել երկար ժամանակով: Հնդկական օվկիանոսում Դիեգո-Գարսիա կղզին, Օմանը, Քենիան, Սոմալին, Եգիպտոսը. այսպես ո՞ւր կհասնի:

Մյուսների հետ ծախսերը կիսելու, միաժամանակ ՆԱՏՕ-ի գծով պարտնյորներին իրեն ավելի ամուր կապելու նպատակով ԱՄՆ-ը ձգտում է ընդլայնել այդ բլոկի ֆունկցիաները: Վաշինգտոնյան ստրատեգները բացեիբաց կոչեցնային իրենց ռազմական պատրաստությունների մեջ ներքաշել տասնյակ այլ պետությունների, աշխարհը պատել իրենց բազաների, օդանավակայանների, զինապահեստների սարդոստայնով:



Նման գործողություններն արդարացնելու համար տարածում են այն վերսիան, թե իբր գոյություն ունի «սովետական սպառնալիք» Մերձավոր ու Միջին Արևելքի նավթային հարստությունների կամ նավթի փոխադրման ուղիների համար: Բացահայտորեն ստահոդ վերսիա, քանի որ դրա հեղինակները քաջ գիտեն, որ ՍՍՀՄ-ը մտադիր չէ ոտնձգություն կատարել ոչ մեկի, ոչ էլ մյուսի դեմ: Եվ առահասարակ անհեթեթություն է կարծել, թե կարելի է «պաշտպանել» Արևմուտքի նավթային շահերը՝ այդ շրջանը վերածելով վառոդի նկուղի:

Ո՛չ, մենք միանգամայն այլ հայացքներ ունենք այն հարցում, թե իրոք ինչպես կարող է ապահովվել Պարսից ծոցի շրջանի և նրա մատույցների խաղաղությունը: Փոխանակ այնտեղ կենտրոնացնելու նորանոր ծովային և օդային արմադաներ, զորքեր ու սպառազինություն, մենք առաջարկում ենք վերացնել այդտեղից պատերազմական սպառնալիքը, կնքելով միջազգային համաձայնություն: Համատեղ ջանքերով, հաշվի առնելով բոլոր կողմերի օրինական շահերը, այդ շրջանում կարելի է ստեղծել կայունության և հանգստության իրավիճակ: Կարելի է երաշխավորել ռեգիոնի պետությունների սուվերեն իրավունքները և այն մնացած աշխարհի հետ կապող ծովային ու այլ կոմունիկացիաների անվտանգությունը: Այսպիսին է վերջերս Սովետական Միության առաջ քաշած առաջարկությունների իմաստը: (Ծափահարություններ):

Այդ նախաձեռնությունը լայն պաշտպանություն գտավ աշխարհում, այդ թվում՝ Պարսից ծոցի մի շարք պետությունների կողմից: Իմիջիայլոց, գտնվեցին նաև սովետական առաջարկության հակառակորդներ, դժվար չէ գուշակել, թե ում ճամբարում: Մենք կկամենայինք հույս հայտնել, որ ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի մյուս երկրների կառավարությունները հանգիստ և անկանխակալ կերպով կքննարկեն այդ ամբողջ հարցը, որպեսզի կարելի լինի միասին գտնել բոլորի համար ընդունելի լուծում:

Այդ հարցի վերաբերյալ պայմանավորվածություն ձեռք բերելը կարող էր, բացի դրանից, սկզբնավորել համաշխարհային օվկիանոսի տարբեր շրջաններում ռազմական ներկայությունը նվազեցնելու շատ կարևոր պրոցեսը: ԱՄՆ-ի հետ ունեցած հարաբերություններում մենք այդ բոլոր տարիներին, ինչպես և առաջներում, վարում էինք սկզբունքային և կոնստրուկտիվ գիծ: Ցավոք, Վաշինգտոնի նախկին վարչակազմի նպատակադրումն ամենևին էլ ոչ հարաբերությունների զարգացումն էր, ոչ փոխըմբռնումը: Փորձելով մեզ վրա ճնշում գործադրել, այնտեղ սկսեցին ավերել այն դրականը, որ մեծ դժվարությամբ հաջողվել էր ստեղծել սովետա-ամերիկյան հարաբերություններում նախորդ տարիներին: Դրա հետևանքով մի շարք ուղղություններում մեր երկկողմ կապերը ետ շպրտվեցին: Սառեցվեց ՍՍՍ—2 պայմանագրի ուժի մեջ մտնելը: Իսկ սպառազինությունների սահմանափակման մի քանի այնպիսի հարցերի շուրջը, ինչպիսին երրորդ երկրներին զենքի մատակարարումների կրճատումն է, ԱՄՆ-ը միակողմանիորեն ընդհատեց մեզ հետ վարվող բանակցությունները:

Ցավոք, Սպիտակ տան ղեկավարության փոխվելուց հետո էլ Վաշինգտոնից բացահայտ ռազմատենչ կոչեր ու հայտարարություններ են լսվում, որոնք, ասես, հատկապես նպատակ ունեն թունավորել մեր երկրների հարաբերությունների մթնոլորտը: Կկամենայինք, այնուամենայնիվ, հուսալ, որ նրանք, ովքեր այսօր որոշում են Ամերիկայի քաղաքականությունը, վերջին հաշվով, կկարողանան ավելի ռեալ կերպով նայել իրերին: ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև, Վարշավայի պայմանագրի և ՆԱՏՕ-ի միջև ստեղծված ռազմաստրատեգիական հավասարակշռությունը օբյեկտիվորեն ծառայում է մեր մոլորակի խաղաղության պահպանմանը: Մենք չենք ձգտել և չենք ձգտում ռազմական գերազանցության հասնել մյուս կողմի նկատմամբ: Դա մեր քաղաքականությունը չէ, բայց մենք նաև թույլ չենք տա այդպիսի գերազանցություն ստեղծել մեր նկատմամբ: Նման փորձերը, ինչպես նաև մեզ հետ ուժի դիրքերից վարվող խոսակցությունները, բացարձակապես հեռանկարներ չունեն: (Ծափահարություններ):

Ջիործել խախտել գոյություն ունեցող հավասարակշռությունը, շպրտաձ դրել սպառազինությունների մրցավազքի նոր, է՛լ ավելի թանկ նստող ու վտանգավոր դարձապտույտ, ահա ինչը կլիներ իսկական պետական իմաստության դրսևորում։ Իսկ դրա համար, արդարև, վաղուց ժամանակն է լուրջ քաղաքականության դռնից դուրս շպրտել «սովետական սպառնալիքի» մաշված խրտվիլակը։

Եկեք նայենք բուն իրավիճակին։

Անկախ այն բանից, թե ինչին է վերաբերում խոսքը՝ Եվրոպայում միջուկային ստրատեգիական սպառազինություններին, թե միջին հեռավորության միջուկային զենքին, երկու դեպքում էլ կողմերի միջև մոտավոր հավասարություն գոյություն ունի։ Զենքի մի քանի տեսակների առումով որոշ առավելություն ունի Արևմուտքը, այլ տեսակների առումով՝ մենք։ Եվ հավասարությունը կարող է ավելի կայուն լինել, եթե կնքվեն համապատասխան պայմանագրեր ու համաձայնագրեր։

Այնուհետև խոսում են տանկերի մասին։ Սովետական Միությունը, իրոք, տանկեր ավելի շատ ունի։ Սակայն ՆԱՏՕ-ի երկրներում դրանք նույնպես քիչ չեն։ Բացի դրանից, նրանք զգալիորեն շատ ունեն հակատանկային միջոցներ։

Իրականությանը չի համապատասխանում նաև զինված ուժերի ընդհանուր թվակազմի ասպարեզում սովետական գերազանցության վերաբերյալ վերսիան։ ԱՄՆ-ը ՆԱՏՕ-ի մյուս երկրների հետ միասին նույնիսկ փոքր-ինչ ավելի թվակազմ ունի, քան ՍՍՀՄ-ը և Վարշավայի պայմանագրի մյուս երկրները։

Սովետական էլ ի՞նչ ռազմական գերազանցության մասին կարող է խոսք լինել։

ԱՄՆ-ի, ինչպես և աշխարհի մյուս բոլոր երկրների վրա պատերազմական սպառնալիք իրոք կախվել է։ Բայց դրա աղբյուրը ոչ թե Սովետական Միությունն է, ոչ թե նրա մտացածին գերազանցությունը, այլ հենց սպառազինությունների մրցավազքը, աշխարհում պահպանվող լարվածությունը։ Այդ իրական, և ոչ թե երևակայական, սպառնալիքի դեմ մենք պատրաստ ենք պայքարելու՝ Ամերիկայի, եվրոպական պետությունների, մեր մոլորակի բոլոր երկրների հետ ձեռք-ձեռքի տված։ Փորձել միմյանց հաղթել սպառազինությունների մրցավազքի ասպարեզում, հույս դնել միջուկային պատերազմում հաղթելու վրա՝ վտանգավոր խելահեղություն է։ (Ծափահարություններ)։

Հանրահայտ է, որ միջազգային իրադրությունը մեծապես պայմանավորված է ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի քաղաքականությամբ։ Ներկայումս նրանց փոխհարաբերությունների վիճակը և լուծում պահանջող միջազգային պրոբլեմների սրությունը, մեր կարծիքով, թելադրում են բոլոր մակարդակներում երկխոսության, այն էլ ակտիվ երկխոսության անհրաժեշտություն։ Մենք պատրաստ ենք երկխոսության։

Փորձը ցույց է տալիս, որ այս իմաստով վճռական օղակը ամենաբարձր մակարդակի հանդիպումներն են։ Դա ճիշտ էր երեկ և ճիշտ է մնում այսօր։ (Ծափահարություններ)։

ՍՍՀՄ-ն ուզում է նորմալ հարաբերություններ ունենալ ԱՄՆ-ի հետ։ Ինչպես մեր երկու երկրների ժողովուրդների, այնպես էլ մարդկության շահերի տեսանկյունից այլ խելացի ճանապարհ պարզապես չկա։ (Ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Անցած հինգ տարիները եղել են Եվրոպայում խաղաղության և անվտանգության համար կուսակցության ու սովետական պետության նպատակասլաց պայքարի տարիներ։

Եվրոպական մայրցամաքում, հակառակ լարվածության թուլացման թշնամիների ջանքերի, երկու սիստեմների երկրների խաղաղ համագործակցությունն ընդհանուր առմամբ վատ չի զարգանում։ Առավել ընդլայնվել և ավելի հագեցած են դարձել քաղաքական կոնտակտները։ Արտաքին քաղաքականության մի շարք խոշոր պրոբլեմներում մեզ հաճախ հաջողվում է ընդհանուր լեզու գտնել։ Ընդլայնվում են տնտեսական, գիտատեխնիկական և կուլտուրական կապերը՝ ձեռք բերելով նոր հատկություններ։ Անցկացվել են համաեվրոպական համագործակցության տարբեր հարցերին նվիրված բազմակողմ խորհրդակցություններ։



կապերի ծավալուն սիստեմ է ստեղծվել մեր և Ֆրանսիայի միջև։ Գործնականում անընդմեջ քաղաքական երկխոսություն է վարվում տարբեր մակարդակներով, ամենից առաջ պրեզիդենտ Վ. Ժիսկար դ'Էստենի հետ։ Եռապատկվել է սովետա-ֆրանսիական առևտրի ծավալը։ Ավելի քան 300 թեմա և ուղղություն է ընդգրկում փոխգործողությունը գիտության, տեխնիկայի և կուլտուրայի ոլորտում։ Եվ թեպետ մենք միջազգային ասպարեզում Ֆրանսիայի ոչ բոլոր գործողություններին ենք համաձայն, մեր հարաբերությունները մնում են որպես լարվածության թուլացման խոշոր գործոն, և մենք հանդես ենք գալիս դրանց հետագա դինամիկ զարգացման օգտին։ (Ծափահարություններ)։

1970 թվականի պայմանագրի և դրան հաջորդած համաձայնագրերի հիման վրա ամբողջությամբ վերցրած բարենպաստ ընթացք ունեն մեր հարաբերությունները Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության հետ։ 1978 և 1980 թվականներին կանցլեր Հ. Շմիդտի, ինչպես և ավելի վաղ Վ. Բրանդտի հետ տեղի ունեցած հանդիպումներն օգտակար ավանդ մուծեցին եվրոպական մայրցամաքում լարվածության թուլացման գործում, ընդլայնեցին սովետա-արևմտագերմանական փոխշահավետ կապերի հորիզոնները։ Հինգ տարում գրեթե կրկնապատկվեց մեր առևտուրը։ ԳՖՀ-ի հետ տնտեսական կապերի մեջ նկատելի տեղ են գրավում այնպիսի խոշոր նախագծեր, ինչպիսիք են՝ սարքավորումների մատակարարումները «Ատոմմաշի», Օսկոլի էլեկտրամետալուրգիական կոմբինատի, քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների համար, խողովակների և սարքավորումների մատակարարումները գազամուղների համար և այլն։

Բայց կան բնագավառներ,— և ոչ նվազ կարևոր,— որտեղ ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի դիրքավորումները էապես տարբերվում են։ Բավական է ասել, որ Բոննը փորձեր է անում երբեմն շրջանցելու Արևմտյան Բեռլինի վերաբերյալ քառակողմ համաձայնագիրը, մի շարք հարցերում հաշվի չառնելու ԳԴՀ-ի սուվերենությունը։ Մենք հանդես ենք գալիս 70-ական թվականներին ձեռք բերված պայմանավորվածությունները խստիվ և լիովին կատարելու օգտին։ Դա կարևոր է մեր երկու երկրների փոխըմբռնման ու համագործակցության համար, Եվրոպայի խաղաղության գործի համար։

Որոշակի առաջընթաց կա նաև Իտալիայի հետ մեր հարաբերություններում։ Տեղի ունեն քաղաքական կոնտակտներ, ընդլայնվում են տնտեսական համագործակցությունը, փոխադարձ ծանոթացումը մեր ժողովուրդների կուլտուրայի հարստություններին։

Բարեկամության և բարիդրացիության ամուր հիմքի վրա են զարգանում սովետա-ֆինլանդական հարաբերությունները։ Մենք պատշաճն ենք հատուցում այն ավանդին, որ Ֆինլանդիան և անձամբ պրեզիդենտ Կեկոնենը ներդնում են Եվրոպայի անվտանգության ամրապնդման գործում։ Մենք գոհ ենք նաև նրանից, որ վատ չեն ծավալվում մեր տնտեսական կապերը, հաջողությամբ է ընթանում արդյունաբերական խոշոր օբյեկտների համատեղ շինարարությունը։

Մենք պատրաստ ենք է՛լ ավելի զարգացնելու լավ հարաբերությունները մեր հարևան Թուրքիայի հետ, ավանդական կապերը Հունաստանի հետ, ողջունում ենք հարաբերությունների հաջող զարգացումը Ավստրիայի, Շվեդիայի, Բելգիայի, Կիպրոսի և մի շարք այլ եվրոպական երկրների հետ։ Քառասնամյա ընդմիջումից հետո նորմալ հունի մեջ են մտել հարաբերությունները Իսպանիայի հետ։

Ինչ վերաբերում է սովետա-անգլիական հարաբերություններին, ապա այստեղ, ցավոք, լճացում է, և ոչ մեր մեղքով։ Կարծում եմ, որ դա չի բխում ո՛չ ՍՍՀՄ-ի, ոչ էլ Անգլիայի շահերից։

Խոսելով եվրոպական գործերի մասին, չի կարելի լռության մատնել նաև այն փաստը, որ նկատվում են նոր լուրջ վտանգներ Եվրոպայի խաղաղության համար։ Խոսքը վերաբերում է ամենից առաջ ՆԱՏՕ-ի որոշմանը՝ Արևմտյան Եվրոպայում տեղաբաշխելու ամերիկյան նոր հրթիռամիջուկային միջոցներ։ Այդ որոշումը «պատասխան» չէ կարծեցյալ սովետական մարտահրավերին, դա զինանոցի սովորական «արդիականացում» չէ, ինչպես պնդում են Արև-

զինանոցներից քիմիական զենքը բացառելու բանակցությունները։ Խաղաղասեր ուժերի գործողություններով հաջողվեց կասեցնել Արևմտյան Եվրոպայում նեյտրոնային զենքի ծավալման պլանների իրականացումը։ Ժողովուրդների առավել մեծ զայրույթն են հարուցում պենտագոնի կողմից կրկին ձեռնարկվող փորձերը՝ այդ զենքի դամոկլյան սուրը կախելու Եվրոպայի երկրների գլխին։ Մենք մեր կողմից հավաստում ենք, որ չենք սկսի դրա արտադրությունը, եթե այն չհայտնվի ուրիշ պետությունների մոտ, և պատրաստ ենք կնքել այդ զենքը մեկընդմիշտ արգելող համաձայնագիր։

Սովետական Միությունը և Վարշավայի պայմանագրի մյուս երկրները հանդես եկան Եվրոպայում ռազմական լարվածությունը թուլացնելու մի շարք կոնկրետ առաջարկություններով։ Մենք կուզենայինք, մասնավորապես, որ համաեվրոպական խորհրդակցության մասնակիցները պարտավորվեին առաջինը միմյանց դեմ չգործադրել ոչ միջուկային, ոչ էլ սովորական սպառազինություններ, որ չընդլայնվեին Եվրոպայում ու մյուս մայրցամաքներում գոյություն ունեցող ռազմական բլոկները և չստեղծվեին նորերը։

Եվրոպայում ռազմական լարվածության թուլացման և զինաթափման հարցերի քննարկման ու լուծման համար Սովետական Միությունը և նրա դաշնակիցներն առաջարկեցին գումարել համաեվրոպական կոնֆերանս։ Այդ հարցն այժմ Մադրիդում տեղի ունեցող հանդիպման ուշադրության կենտրոնում է։

Մենք չենք թուլացրել ջանքերը նաև Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի ու սպառազինությունների կրճատման հարցի վերաբերյալ Վիեննայի բանակցություններում պրոգրեսի հասնելու համար։ Սոցիալիստական երկրներն այստեղ արևմտյան պարտնյորներին ընդառաջ են գնացել ավելի քան կես ճանապարհը։ Բայց պետք է ուղղակի ասել՝ եթե արևմտյան երկրներն այսուհետև էլ ձգձգեն այդ բանակցությունները, միաժամանակ մեծացնելով իրենց ռազմական պոտենցիալը Եվրոպայում, ապա մենք հարկադրված կլինենք ուշադրություն առնել այդ փաստը։

Կարևոր շատ նախաձեռնություններ, որոնցով Սովետական Միությունը և նրա դաշնակիցները հանդես են եկել անցած հինգ տարիների ընթացքում, հավանության են արժանացել ՄԱԿ-ի որոշումներով, այդ թվում Գլխավոր ասամբլեայի՝ զինաթափմանը նվիրված հատուկ նստաշրջանում։

Միջազգային անվտանգությունն ամրապնդելու և սպառազինությունների մրցավազքը սահմանափակելու վերաբերյալ սովետական առաջարկությունները պահպանում են իրենց ուժը։ Դրանց կենսագործման նպատակով կուսակցության Կենտրոնական կոմիտեի ղեկավարությամբ շարունակում են ակտիվ գործել սովետական դիվանագետները, արտաքին քաղաքական ճակատի բոլոր աշխատողները։

Մեր գործողությունները համահնչուն են մյուս երկրների ու ժողովուրդների ձգտումներին։ Բավական է վերհիշել, որ տարբեր մայրցամաքների շատ պետությունների կողմից առաջ են քաշվել և միջազգային լայն պաշտպանության արժանացել այսպիսի առաջարկություններ. Լատինական Ամերիկայից բացի միջուկազերծ գոտիներ հայտարարել Աֆրիկան և Մերձավոր Արևելքը, խաղաղության գոտիներ ստեղծել Հարավարևելյան Ասիայում, Հնդկական օվկիանոսում, Միջերկրական ծովում։ Իսկ համաեվրոպական խորհրդակցության որոշումները փաստորեն նպատակամղված են այն բանին, որ այդպիսի գոտի դառնա նաև ամբողջ Եվրոպան։

Ընկերնե՛ր։ Մենք շարունակում ենք պայքարը միջազգային իրադրության արմատական առողջացման համար։ Այստեղ հուսալի կողմնացույց է եղել ու մնում է, ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների հռչակած խաղաղության ծրագիրը։

Այսօր աշխարհի իրադրությունը պահանջում է նոր, լրացուցիչ ջանքեր՝ պատերազմի սպառնալիքը վերացնելու, միջազգային անվտանգությունն ամրապնդելու համար։ Թույլ տվեք համագումարին զեկուցել այդ նպատակին ուղղված մի շարք նկատառումների մասին։

Վերջին տարիներս, ինչպես գիտեք, աշխարհի մերթ մեկ, մերթ մյուս շր-



ջանում առաջանում էին պատերազմական կոնֆլիկտների օջախներ, որոնք հաճախ սպառնում էին վերածվելու մեծ հրդեհի։ Դրանց մարումը, ինչպես ցույց տվեց փորձը, դյուրին գործ չէ։ Շատ ավելի լավ կլիներ իրագործել պրոֆիլակտիկա, կանխել այդպիսի օջախների առաջացումը։

Եվրոպայում, օրինակ, այդ նպատակին ինչ-որ չափով ծառայում են,— և ընդհանուր առմամբ վատ չեն ծառայում,— ռազմական բնագավառում վստահությունն ամրապնդելու միջոցառումները, որոնք կիրառվում են համաեվրոպական խորհրդակցության որոշմամբ։ Դրանք են՝ ցամաքային զորքերի զորավարժությունների մասին վաղօրոք ծանուցելը, ուրիշ երկրներից դիտորդների հրավիրումը՝ դրանց ներկա լինելու։ Այժմ այդ միջոցառումներն իրականացնում են եվրոպական պետությունների տերիտորիաներում, ներառյալ ՍՍՀՄ-ի արևմտյան շրջանները։ Մենք արդեն ասել ենք, որ պատրաստ ենք ավելի հեռուն գնալ՝ ծանուցել նաև ռազմածովային և ռազմաօդային ուժերի զորավարժությունների մասին։ Մենք առաջարկել ենք,— և կրկին առաջարկում ենք,— որ ծանուցումներ արվեն նաև զորքերի խոշոր տեղաշարժերի մասին։

Իսկ այժմ մենք ուզում ենք առաջարկել՝ էապես ընդլայնել նաև այդպիսի միջոցառումների կիրառման գոտին։ **Մենք պատրաստ ենք դրանք տարածել ՍՍՀՄ-ի ամբողջ եվրոպական մասի վրա, պայմանով, եթե վստահության միջոցառումների գոտին համապատասխանորեն ընդլայնեն նաև արևմտյան պետությունները:**

Կա մի շրջան, որտեղ վստահության միջոցառումների մշակումն ու կիրառումը,— իհարկե, հաշվի առնելով շրջանի յուրահատկությունը,— կարող էին ո՛չ միայն լիցքաթափել իրադրությունը տեղում, այլև դառնալ ընդհանուր խաղաղության հիմքերի ամրապնդման համար շատ կարևոր գործ։ Դա Հեռավոր Արևելքն է, որտեղ հարևան են այնպիսի տերություններ, ինչպիսիք են ՍՍՀՄ-ը, Չինաստանը, Ճապոնիան։ Այնտեղ կան նաև ամերիկյան ռազմական բազաներ։ **Սովետական Միությունը պատրաստ կլիներ բոլոր շահագրգռված երկրների հետ կոնկրետ բանակցություններ վարելու Հեռավոր Արևելքում վստահության միջոցառումների շուրջը:**

Առաջ քաշելով վստահության միջոցառումների վերաբերյալ այս հեռամետ առաջարկությունները, մենք ելնում ենք այն բանից, որ դրանց իրականացումը կնպաստի պրոգրեսին նաև զինաթափման գործում։

Այնուհետև։ Պարսից ծոցի վերաբերյալ մեր առաջարկությունների առթիվ երբեմն ասում են, թե դրանք չի կարելի անջատել Աֆղանստանում սովետական զինվորական կոնտինգենտի գտնվելու հարցից։ Ի՞նչ կարելի է ասել այս մասին։ Սովետական Միությունը պատրաստ է պայմանավորվածության հասնելու Պարսից ծոցի՝ որպես ուրույն պրոբլեմի շուրջը։ Պատրաստ է, իհարկե, նաև մասնակցելու Աֆղանստանի շուրջը դրության առանձին կարգավորմանը, ինչի մասին ես արդեն վերը ասացի։ **Բայց մենք չենք առարկում նաև այն բանի դեմ, որ Աֆղանստանի հետ կապված հարցերը քննարկվեն Պարսից ծոցի անվտանգության հարցերի հետ շաղկապված:**

Բնականաբար, այս դեպքում կարող են քննարկվել աֆղանական պրոբլեմի միայն միջազգային կողմերը և ոչ թե ներաֆղանական գործերը։ Աֆղանստանի սուվերենությունը, ինչպես նաև չմիացած պետության նրա ստատուսը, պետք է լիովին պաշտպանվի։ (Ծափահարություններ):

Մենք մի անգամ ևս կոչ ենք անում զսպվածություն հանդես բերել ստրատեգիական սպառազինությունների բնագավառում։ Չի կարելի թույլ տալ, որ աշխարհի ժողովուրդները ապրեն միջուկային պատերազմի սանձազերծման սպառնալիքի ներքո։

Ստրատեգիական սպառազինությունների սահմանափակումը և դրանց կրճատումն արտակարգ պրոբլեմ է։ **Մենք մեր հերթին պատրաստ ենք անհապաղ շարունակել համապատասխան բանակցությունները ԱՄՆ-ի հետ՝ պահպանելով այն ամբողջ դրականը, որ մինչև օրս ձեռք է բերվել այդ բնագավառում:** Իհարկե, բանակցությունները կարող են վարվել միայն հավասարության և միատեսակ անվտանգության հիման վրա։ Մենք չենք դիմի այնպիսի համաձայնության, որը միակողմանի առավելություն տար ԱՄՆ-ին։ Այստեղ

պատրանքներ չպետք է լինեն։ Մեր կարծիքով, հարկ եղած ժամանակ այդպիսի բանակցությունների մեջ պետք է ներգրավվեն նաև մյուս բոլոր միջուկային տերությունները։

ՍՍՀՄ-ը պատրաստ է բանակցություններ վարելու սպառազինությունների ուրիշ տեսակների սահմանափակման վերաբերյալ։ Իր ժամանակին մենք առաջարկում էինք արգելել ԱՄՆ-ում «Թրայդենտ» ծովային հրթիռային սիստեմի և մեզ մոտ՝ համապատասխան սիստեմի ստեղծումը։ Այդ առաջարկությունը չընդունվեց։ Դրա հետևանքով ամերիկացիներն ստեղծել են «Թրայդենտ—1» հրթիռներով զինված «Օհայո» նոր սուզանավ։ Համանման սիստեմ՝ «Թայֆուն» սիստեմ է ստեղծված նաև մեզ մոտ։ Դե, իսկ ո՞վ դրանից շահեց։

Մենք պատրաստ ենք պայմանավորվածության հասնելու նոր սուզանավերի՝ ԱՄՆ-ում «Օհայո» տիպի և ՍՍՀՄ-ում՝ համանման տիպի սուզանավերի ծավալումը սահմանափակելու շուրջը։ Մենք կարող էինք նաև պայմանավորվածության հասնել այդ սուզանավերի վրա տեղադրվող առկա բալիստիկ հրթիռների արդիականացումն արգելելու և նորերն ստեղծելու շուրջը։

Այժմ՝ Եվրոպայում հրթիռամիջուկային զենքի մասին։ Կատարվում է այդ զենքի ավելի ու ավելի վտանգավոր կուտակում։ Ստեղծվել է յուրատեսակ արատավոր շրջան. մի կողմի գործողությունները հարուցում են մյուսի հակամիջոցները։ Ինչպե՞ս կտրել այդ շղթան։

Մենք առաջարկում ենք պայմանավորվածության հասնել այն մասին, որ արդեն այժմ մորատորիում սահմանվի Եվրոպայում ՆԱՏՕ-ի երկրների և ՍՍՀՄ-ի միջին հեռավորության նոր հրթիռամիջուկային միջոցների տեղաբաշխման համար, այսինքն՝ քանակական և որակական տեսակետից սառեցնել այդպիսի միջոցների գոյություն ունեցող մակարդակը, ներառյալ, իհարկե, այդ շրջանում ԱՄՆ-ի առաջավոր բազավորման միջուկային միջոցները։ Այդ մորատորիումը կարող էր ուժի մեջ մտնել՝ հենց որ սկսվեն տվյալ հարցի վերաբերյալ բանակցությունները, և գործել, քանի դեռ չի կնքվել Եվրոպայում այդպիսի միջուկային միջոցների սահմանափակման, իսկ ավելի լավ է՝ կրճատման մշտական պայմանագիր։ Ընդ որում, մենք ելնում ենք այն բանից, որ երկու կողմերն էլ կդադարեցնեն համապատասխան լրացուցիչ միջոցների, այդ թվում ամերիկյան «Փերշինգ—2» հրթիռների և ցամաքային բազավորման ստրատեգիական թևավոր հրթիռների ծավալման ամեն մի նախապատրաստություն։

Ժողովուրդները պետք է իմանան ճշմարտությունն այն մասին, թե մարդկության համար ինչպիսի կործանարար հետևանքների կհասցներ միջուկային պատերազմը։ Մենք առաջարկում ենք, որ ստեղծվի միջազգային հեղինակավոր կոմիտե, որը ցույց տար միջուկային աղետի կանխման կենսական անհրաժեշտությունը։ Կոմիտեի մեջ կարող էին մտնել տարբեր երկրների ականավոր գիտնականներ։ Նրանց արած հետևությունների մասին պետք է տեղեկացվի ամբողջ աշխարհին։ (Երկարատև ծափահարություններ)։

Իհարկե, այսօրվա աշխարհում կան միջազգային ուրիշ շատ հրատապ պրոբլեմներ։ Դրանց խելացի լուծումը հնարավորություն կընձեռեր վերացնել միջազգային իրադրության շիկացածությունը, ժողովուրդներին հնարավորություն կտար ավելի ազատ շունչ քաշելու։ Բայց դրա համար հարկավոր են հետևես մոտեցում, քաղաքական կամք ու համարձակություն, հեղինակություն և ազդեցություն։ Ահա թե ինչու մեզ թվում է, որ օգտակար կլիներ հրավիրել Անվտանգության խորհրդի հատուկ նիստ, խորհրդի անդամ պետությունների բարձրագույն ղեկավարների մասնակցությամբ, գտնելու համար միջազգային իրադրությունն առողջացնելու, պատերազմ թույլ չտալու բանալիներ։ Նիստին, հավանաբար, ցանկության դեպքում, կարող էին մասնակցել նաև այլ պետությունների ղեկավարներ։ Իհարկե, կպահանջվեր այդպիսի նիստի հիմնավոր նախապատրաստություն՝ նրա դրական արդյունքներն ապահովելու նպատակով։

Այսպիսով, ընկերնե՛ր, մեր կողմից առաջարկվող նոր միջոցառումներն ընդգրկում են հարցերի լայն շրջանակ։ Դրանք վերաբերում են թե՛ հրթիռամիջուկային, թե՛ սովորական տիպի զենքին, թե՛ ցամաքային զորքերին, թե՛ ծովային, թե օդային ուժերին։ Դրանք շոշափում են թե՛ Եվրոպայի, թե՛ Մերձավոր, Միջին, Հեռավոր Արևելքի դրությունը։ Դրանցում խոսքը վերաբերում է ինչպես քաղաքական, այնպես էլ ռազմական բնույթի միջոցառումներին։ Այդ բոլոր առաջարկությունները միավորում են մեկ միասնական նպատակ, մեր մեկ ընդհանուր ձգտումը՝ ամեն հնարավոր բան անել ժողովուրդներին ձերբազատելու միջուկային պատերազմի սպառնալիքից, պահպանելու աշխարհի խաղաղությունը։ (Երկարատև ծափահարություններ)։

Սա, եթե ուզում եք, խաղաղության մեր ծրագրի օրգանական շարունակությունն ու զարգացումն է՝ մեր օրերի միջազգային կյանքի առավել հրատապ, կենսական պրոբլեմների պայմաններում։

Պաշտպանել խաղաղությունը. միջազգային տեսակետից այժմ մեր կուսակցության, մեր ժողովրդի, ինչպես նաև մոլորակի բոլոր ժողովուրդների համար չկա ավելի կարևոր խնդիր։ (Երկարատև ծափահարություններ)։

Պաշտպանելով խաղաղությունը, մենք աշխատում ենք ո՛չ միայն այժմ ապրող մարդկանց համար, ո՛չ միայն մեր երեխաների ու թոռների համար. մենք աշխատում ենք գալիք տասնյակ սերունդների երջանկության համար։

Եթե խաղաղություն լինի, ժողովուրդների ստեղծագործական եռանդը, խարսխվելով գիտության ու տեխնիկայի նվաճումների վրա, անկասկած, կլուծի այն պրոբլեմները, որոնք այժմ հուզում են մարդկանց։ Իհարկե, այն ժամանակ մեր հետնորդների առջև կծագեն նոր, է՛լ ավելի վեհ խնդիրներ։ Ինչ արած, այսպիսին է պրոգրեսի դիալեկտիկան, կյանքի դիալեկտիկան։

Ոչ թե պատերազմի նախապատրաստություն, որը ժողովուրդներին դատապարտում է իրենց նյութական ու հոգևոր հարստությունների անմիտ վատնման, այլ խաղաղության ամրապնդում. ահա վաղվա օրվա ուղենիշը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

# II.

# ՍՄԿԿ-Ի ՏՆՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

Ընկերնե՛ր։ Թույլ տվեք անցնել ՍՄԿԿ-ի տնտեսական քաղաքականության հարցերին։ Ժողովրդական տնտեսության ղեկավարումը կուսակցության և պետության ամբողջ գործունեության առանցքն է։ Չէ՛ որ հենց էկոնոմիկայի բնագավառում է դրվում սոցիալական խնդիրների լուծման, երկրի պաշտպանունակության ամրապնդման հիմքը, ակտիվ արտաքին քաղաքականության հիմքը։ Հենց այստեղ են ստեղծվում դեպի կոմունիզմ սովետական հասարակության հաջող առաջընթացի անհրաժեշտ նախադրյալները։

## 1. ՍՍՀՄ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 70-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ԵՎ ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ՀԻՄՆԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

Թևակոխելով յոթանասնական թվականները, կուսակցությունը համակողմանիորեն վերլուծեց ժողովրդական տնտեսության վիճակը և սահմանեց զարգացած սոցիալիզմի սոցիալ-տնտեսական պրոբլեմների լուծման գլխավոր ուղիները։ Էկոնոմիկայի նկատմամբ կուսակցական, քաղաքական մոտեցման ելակետ ծառայել և ծառայում է ամեն ինչ հանուն մարդու, ամեն ինչ մարդու

ՍՄԿԿ Կենտկոմը այս արդյունքների սոցիալ-քաղաքական իմաստն այն է համարում, որ էկոնոմիկայի կայուն վերելքի հիման վրա շարունակում էին կատարելագործվել հասարակական հարաբերությունների ամբողջ սիստեմը, մեր սոցիալիստական ապրելակերպը:

Ձեռք բերվածը տասնյակ միլիոնավոր մարդկանց անձնվեր աշխատանքի, կուսակցական կազմակերպությունների, ժողովրդական դեպուտատների սովետների, արհմիությունների և կոմերիտմիության ակտիվ աշխատանքի, սոցիալիստական մրցության թափի արգասիքն է: Եվ այսօր, հետադարձ հայացք գցելով անցած տարիների վրա, մենք լիակատար հիմքով կարող ենք ասել. վիթխարի աշխատանք է կատարված: Ավելի է հզորացել, հարստացել ու գեղեցկացել մեր մեծ հայրենիքը: (Երկարատև ծափահարություններ):

Պատշաճը հատուցելով սովետական ժողովրդի հիրավի պատմական մեծագործություններին, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն պարզորոշ տեսնում է նաև դժվարությունները, թերությունները, չլուծված պրոբլեմները: Նախատեսված ոչ բոլոր բնագծերն է հաջողվել նվաճել: Ոչ բոլոր մինիստրություններն ու ձեռնարկություններն են կատարել իրենց պլանները: Ժողովրդական տնտեսության մեջ դեռ կան նեղ տեղեր և անհամամասնություններ:

Այստեղ պատճառները տարբեր են: Դրանցից են թե՛ օբյեկտիվ, մեր կամքից անկախ հանգամանքների ներգործությունը, թե՛ պլանավորման ու կառավարման գործում տեղ գտած թերությունները և թե մի շարք կուսակցական մարմինների ու տնտեսական ղեկավարների անբավարար պահանջկոտությունը, կարգապահության խախտումները, անտնտեսվարության դրսևորումները: Բայց, թերևս, ամենագլխավոր պատճառն այն է, որ դեռ լիովին չեն հաղթահարվել իներցիայի ուժը, այն ժամանակաշրջանում արմատավորված ավանդույթները և սովորությունները, երբ առաջին պլան էր մղվում գործի ոչ այնքան որակական, որքան քանակական կողմը:

Այս ամենի մասին հանգամանորեն խոսվել է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումներում: Ընդունվել են կոնկրետ որոշումներ, որոնց նպատակն է եղել առաջ մղել ետ մնացող ճյուղերը և օղակները: Եվ հիմա հարկավոր է, հենվելով կուտակված փորձի վրա, է՛լ ավելի վճռականորեն վերացնել էկոնոմիկայի աճին խանգարող խոչընդոտները: Դրա համար կա միայն մի ուղի՝ բարձրացնել պահանջկոտությունը, սովորել ավելի արդյունավետ աշխատել, ավելի արդյունավետ տնտեսավարել: Հեշտ չէ այդ գիտությանը տիրապետելը, բայց մենք՝ կոմունիստներս, հաստատակամ ու նպատակասլաց մարդիկ ենք: Մենք կանգնել ենք այդ ուղու վրա և դրանից չենք շեղվի: (Երկարատև ծափահարություններ):

## 2. 80-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ԵՎ ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԺՈՂՈՎՐԴԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՀՐԱՏԱՊ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

Ընկերնե՛ր: Տասնմեկերորդ հնգամյակի և 80-ական թվականների խնդիրները ծավալուն շարադրված են «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում: Դրա քըննարկմանը մասնակցեց ավելի քան 121 միլիոն մարդ: Նախագծին լիովին հավանություն տվեցին և այն պաշտպանեցին բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, մտավորականությունը:

Արվեցին մեծ թվով օգտակար առաջարկություններ, լրացումներ և ճըշգրտումներ, որոնք, անկասկած, կհարստացնեն փաստաթղթի բովանդակությունը: Թույլ տվեք համագումարի ամբիոնից երախտագիտություն հայտնել այն բոլոր ընկերներին, կոմունիստներին և անկուսակցականներին, ովքեր



մասնակցել են հիմնական ուղղությունների քննարկմանը: (Ծափահարություններ):

Կուսակցության սոցիալ-տնտեսական պլանների նկատմամբ միլիոնավոր աշխատավորների սրտացավ, անշահախնդիր վերաբերմունքը, պետության գործերի նկատմամբ նրանց հոգատարությունը սովետական կարգերի իսկական դեմոկրատիզմի արտահայտությունն են: Դա մեր պլանների հաջող իրականացման կարևոր երաշխիքն է:

### 80-ական թվականների առանձնահատկությունները և տասնմեկերորդ հնգամյակի գլխավոր խնդիրը

Երկիրը նոր տասնամյակ թևակոխեց, ունենալով տնտեսական և գիտատեխնիկական հզոր պոտենցիալ, պատրաստված, գործին նվիրված կադրերի բազմամիլիոնանոց բանակ: Դրանով են որոշվում մեր հնարավորությունները: Միաժամանակ մեծանում են նաև պահանջմունքները, ընդլայնվում ինչպես ժողովրդական տնտեսության նորմալ աշխատանքի, այնպես էլ սովետական մարդկանց հարաճուն պահանջարկների բավարարման համար անհրաժեշտ ներդրումների մասշտաբները: Եվ հարկ կլինի այդ արտադրական և անձնական պահանջմունքները բավարարել ոչ սովորական պայմաններում:

80-ական թվականներին, ինչպես դուք գիտեք, կգործեն տնտեսական զարգացումը բարդացնող մի շարք գործոններ: Դրանցից մեկը աշխատանքային ռեսուրսների աճի կրճատումն է: Մյուսը՝ Արևելքի ու Հյուսիսի յուրացման առնչությամբ ծախսումների ավելացումը, ինչպես նաև շրջակա միջավայրի պահպանության համար ծախսումների անխուսափելի աճը: Դրան պետք է ավելացնել, որ գոյություն ունեն արմատական վերակառուցում պահանջող ոչ քիչ թվով հին ձեռնարկություններ: Բացի դրանից, ճանապարհները, տրանսպորտը, կապն էլ ետ են մնում էկոնոմիկայի հարաճուն կարիքներից: Հետևաբար, այստեղ նույնպես պահանջվում են լուրջ ջանքեր, մեծ միջոցներ:

Հիմնական ուղղությունների նախագծում մարմնավորված է կուսակցության տնտեսական ստրատեգիայի հաջորդայնությունը: Այստեղ հաշվի են առնվում նաև այն կոնկրետ պայմանները, որոնցում զարգանալու է երկիրը: Հենց այս տեսանկյունից են որոշված տնտեսական աճի նպատակները և դրանց հասնելու հիմնական ուղիները:

«Տասնմեկերորդ հնգամյակի գլխավոր խնդիրն է,— ասվում է նախագծում,— ապահովել սովետական մարդկանց բարեկեցության հետագա աճը ժողովրդական տնտեսության հաստատուն, առաջընթաց զարգացման հիման վրա, գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու, էկոնոմիկան զարգացման ինտենսիվ ուղու վրա փոխադրելու, երկրի արտադրական պոտենցիալն ավելի ռացիոնալ օգտագործելու, ռեսուրսների բոլոր տեսակներն ըստ ամենայնի խնայելու և աշխատանքի որակը բարելավելու հիման վրա»:

Ըստ հաշվարկների համապատասխան, սպառման և կուտակման համար օգտագործվող ազգային եկամուտը մինչև 1990 թվականը պետք է ավելանա առնվազն 1,4 անգամ: Մոտավորապես նույնքան կաճեն նաև կապիտալ ներդրումները:

Պլանավորվում է տասնմեկերորդ հնգամյակում ազգային եկամուտն ավելացնել 18—20 տոկոսով, արդյունաբերության արտադրանքը՝ 26—28 տոկոսով, գյուղատնտեսության արտադրանքը՝ 12—14 տոկոսով: Հնգամյակում կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը նախատեսված է 711—730 միլիարդ ռուբլի:

Ժողովրդատնտեսական բոլոր խնդիրների՝ թե՛ արտադրական և թե սոցիալական խնդիրների, լուծման անհրաժեշտ նախադրյալը ծանր ինդուստրիայի զարգացումն է: Դա հատկապես վերաբերում է նրա բազային ճյուղերին, ամենից առաջ վառելիքաէներգետիկ ճյուղերին: Թվեր չեմ հիշատակի, դրանք ձեզ

հայտնի են։ Կկամենայի միայն ընդգծել, որ ավելի ու ավելի հրատապ է դառնում վառելիքաէներգետիկ հաշվեկշռի կառուցվածքը բարելավելու խնդիրը։ Հարկավոր է նվազեցնել նավթի՝ որպես վառելիքի, բաժինը, այն փոխարինել գազով և ածխով, ավելի արագ զարգացնել ատոմային էներգետիկան, այդ թվում արագ նեյտրոններով գործող ռեակտորները։ Եվ, իհարկե, կյանքը պահանջում է շարունակել էներգիայի սկզբունքորեն նոր աղբյուրների որոնումը, ներառյալ ջերմամիջուկային էներգետիկայի հիմքերի ստեղծումը։

Որպես տնտեսական և քաղաքական առաջնակարգ կարևորություն ունեցող խնդիր՝ հարկ եմ համարում առանձնացնել սիբիրյան գազի հանույթի արագ ավելացումը։ Արևմտյան Սիբիրի ռեգիոնի հանքավայրերը եզակի են։ Դրանցից առավել խոշորը՝ Ուրենգոյինը, աչքի է ընկնում այնպիսի հսկայական պաշարներով, որ երկար տարիների ընթացքում կարող է ապահովել ինչպես երկրի ներքին պահանջմունքները, այնպես էլ արտահանումը, այդ թվում՝ կապիտալիստական երկրներ։ Արևմտյան Սիբիրում գազի ու նավթի հանույթը, երկրի եվրոպական մաս դրանց փոխադրումը պետք է դարձնել տասնմեկերորդ հնգամյակի, ինչպես նաև տասներկուերորդ հնգամյակի էներգետիկ ծրագրի կարևորագույն օղակները։ Այսպիսին է կուսակցության Կենտրոնական կոմիտեի նպատակադրումը, և հույս ունեմ, որ այն պաշտպանություն կգտնի համագումարում։ (Երկարատև ծափահարություններ)։

Մենք սպասում ենք, որ այդ նախագծի իրականացմանը, ինչպես նաև ատոմային էներգետիկայի զարգացմանը կմասնակցեն շահագրգռված սոցիալիստական երկրները։ Դա էական նշանակություն կունենար մեր ամբողջ ընկերակցության համար։

Նկատի ունենալով հեռանկարը, հարկավոր է նաև հիմնավորապես ուսումնասիրել Կանսկ-Աչինսկի ավազանի ածխի հիման վրա սինթետիկ հեղուկ վառելիքի արտադրության հարցը։

Նոր հնգամյակում խոշոր հատկացումներ են առանձնացվում սև ու գունավոր մետալուրգիայի զարգացման համար։ Մենք, իհարկե, կգործարկենք նոր մետալուրգիական կարողություններ։ Բայց մետաղի դեֆիցիտը հաղթահարելու համար կա նաև այլ ուղի՝ այն ամենի ավելի հմուտ և լրիվ օգտագործումը, ինչ արտադրվում է։

Մետաղամշակման մեջ կորուստների և մնացուկների թեկուզ կիսով չափ կրճատումը համարժեք կլիներ սև մետաղների պատրաստի գլանվածքի արտադրությունը տասը տոկոսով ավելացնելուն։ Փոքր ռեզերվ չէ հենց մետալուրգիայում մնացուկների կրճատումը, ինչպես նաև կոռոզիայի պատճառով մետաղի կորուստների կրճատումը։ Իսկ երկրի մասշտաբներով ինչպիսի՜ արդյունք կտային հաստոցների և սարքավորումների քաշի նվազեցումը, մետաղի և մետաղյա իրերի որակի բարձրացումը կամ, ասենք, մետաղի փոխարինիչների արտադրության ընդլայնումը։ Այստեղ գործելու լայն ասպարեզ ունեն մեր գիտնականները, կոնստրուկտորները, ռացիոնալիզատորները։ Իհարկե, այդ ամենի համար նույնպես անհրաժեշտ են ներդրումներ, ջանքեր, որոշակի ժամանակ։ Բայց ավելի քիչ չափերով, քան մետաղի արտադրության անվերջ ավելացման համար։

Նոր հնգամյակը լուրջ քննություն կլինի շինարարների համար։ Հնգամյակի բնորոշ գիծը ուժերի ըստ ամենայնի համակենտրոնացումն է այն ձեռնարկությունների շուտափույթ ավարտման և գործարկման վրա, որոնք ի վիճակի են ապահովել արտադրանքի առավել մեծ աճ, վերացնել նեղ տեղերը։ Մենք արդեն վերցրել ենք այդ կուրսը, և հարկավոր է անշեղորեն հետևել դրան։

Հատկապես պետք է անդրադառնամ տրանսպորտի աշխատանքին։ Հաշվի առնելով տրանսպորտում կուտակված պրոբլեմների լրջությունը և մասշտաբները, մենք եկանք այն եզրակացության, որ դրանք հնարավոր է լուծել միայն երկարաժամկետ կոմպլեքսային ծրագրի հիման վրա։ Այդ ծրագրի մշակումը նախատեսված է հիմնական ուղղություններով։

Ամբողջ բեռնաշրջանառության կեսից ավելին ընկնում է երկաթուղիներին. սկսված հնգամյակում դրանց զարգացման համար հատկացումները մեծաց-



վում են ավելի քան 30 տոկոսով։ Դա հնարավորություն կընձեռի արդիականացնելու շարժակազմը, բարելավելու գծային տնտեսությունը։ Կարևոր է ուշադրությունը կենտրոնացնել կայարանային ուղիների զարգացման վրա. դա երկաթուղիների թողունակության ավելացման խնայողաբեր և արագ միջոց է։

Ծրագրով պետք է նախատեսվի տրանսպորտի բոլոր տեսակների՝ երկաթուղային, ավտոմոբիլային և օդային, ծովային և գետային, խողովակամուղ տրանսպորտի կոորդինացման ուժեղացում։ Էներգետիկան և հումքային բազան դեպի Արևելք տեղաշարժելը պահանջում է արագացնել ճանապարհների, խողովակաշարերի, օդանավակայանների զարգացումը Սիբիրում և Հեռավոր Արևելքում։

Ինչպես և ուրիշ շատ պրոբլեմներ, տրանսպորտի պրոբլեմը նույնպես չի կարելի լուծել մեկուսի։ Տրանսպորտային ծախքերի կրճատումը համապետական մեծ խնդիր է։ Դրա լուծման ուղին արտադրաուժերի ռացիոնալ տեղաբաշխումն է, բեռնահոսքերի օպտիմալ սխեմաների մշակումը, հանդիպական փոխադրումների բացառումը։

Եվ, ինչ խոսք, պետք է լրջորեն բարելավել ուղևորների փոխադրումները՝ նվազագույնի հասցնել չվացուցակի խախտումները, ավելի հարմարավետ դարձնել կայարանները և օդանավակայանները, բարձրացնել սպասարկման ընդհանուր կուլտուրան։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն էներգետիկայի, մետալուրգիայի, ծանր արդյունաբերության մյուս ճյուղերի բոլոր աշխատողներին, շինարարներին, տրանսպորտի աշխատողներին կոչ է անում նոր հնգամյակը նշանավորել հարվածային, նախաձեռնողական աշխատանքով՝ հայրենիքի բարօրության օգտին աշխատանքով։ (Երկարատև ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Յուրաքանչյուր ճյուղի առջև ծառացած են իր հրատապ խնդիրները և առանձնահատուկ պրոբլեմները։ Բայց կան այնպիսի պրոբլեմներ, որոնք ընդգրկում են ժողովրդական տնտեսության բոլոր ոլորտները, և դրանցից գլխավորն է՝ ավարտել անցումը զարգացման առավելապես ինտենսիվ ուղուն։

Էկոնոմիկայի ինտենսիվացման, դրա արդյունավետության բարձրացման էությունը, եթե այս բանաձևն արտահայտենք պրակտիկ գործերի լեզվով, ամենից առաջ այն է, որ արտադրության արդյունքներն աճեն ավելի արագ, քան դրա վրա կատարվող ծախսումները, որ, արտադրության մեջ ներգրավելով համեմատաբար ավելի քիչ ռեսուրսներ, կարելի լինի հասնել ավելի շատ բանի։ Այս խնդրի լուծմանը պետք է ենթարկված լինեն պլանավորումը, գիտատեխնիկական և ստրուկտուրային քաղաքականությունը։ Հանուն արդյունավետության պետք է գործեն նաև տնտեսավարման մեթոդները, կառավարման բնագավառի քաղաքականությունը։ Թույլ տվեք վստահություն հայտնել, որ նման հարցադրումը լիովին հավանություն կգտնի մեր կուսակցական համագումարում։ (Երկարատև ծափահարություններ)։

Համագումարի պատգամավորները պետք է լսեն և քննարկեն ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ն. Ա. Տիխոնովի զեկուցումը ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների մասին։ Իմ կողմից կուզենայի հայտնել սկզբունքային բնույթի մի քանի նկատառումներ, որոնք նշանակություն ունեն ինչպես հաջորդ հնգամյակում, այնպես էլ ընդհանուր առմամբ սկսված տասնամյակի ընթացքում մեր տնտեսական քաղաքականության համար։

## Ավելի լրիվ, ավելի արդյունավետ օգտագործել արտադրական պոտենցիալը

Ժողովրդական տնտեսության մեջ ներգրավված են, հիրավի, հսկայական ռեսուրսներ։ Քանիցս նշվել է, որ Սովետական Միությունը արտադրանքի կարևոր շատ տեսակների, այդ թվում՝ նավթի ու պողպատի, ցեմենտի ու հանքային

պարարտանյութերի, ցորենի ու բամբակի, մագիստրալային էլեկտրաքարշերի ու ջերմաքարշերի արտադրությամբ աշխարհում գրավում է առաջին տեղը։ Մենք ունենք հաստոցների ամենամեծ համակազմը աշխարհում։ Մենք մյուս երկրներին գերազանցում ենք ինժեներների թվով։ Եվ այս ամենով, ընկերնե՛ր, կարելի է հպարտանալ։

Բայց հպարտության հետ մեկտեղ պետք է մշտապես առկա լինի բարձր պատասխանատվության զգացումը։ Պատասխանատվություն այն բանի համար, որ սովետական ժողովրդի ստեղծած վիթխարի պոտենցիալն օգտագործվի խնամքով, լիակատար հատուցով։

Համաշխարհային լավագույն ցուցանիշների համեմատությամբ մենք ազգային եկամտի մեկ միավորի համար ավելի շատ հումք ու էներգիա ենք ծախսում։ Հետևաբար, հնարավորություն կա զգալիորեն ավելացնելու արդեն առկա ռեսուրսներից վերջնական արտադրանքի թողարկումը։

Ես արդեն խոսեցի այն մասին, թե ինչ կարող է տալ մետաղի ավելի ռացիոնալ, խնայողական օգտագործումը։ Դա լիովին վերաբերում է ռեսուրսների փաստորեն բոլոր տեսակներին՝ լինի դա հանքաքար, բնափայտ, թե շինանյութ։ Իսկ վերցրեք, օրինակ, նավթը։ Հսկայական ռեզերվներ կան ընդերքից նավթի կորզման աստիճանը բարձրացնելու մեջ։ Անչափ շատ բան կարող է տալ շարժիչների կատարելագործումը, ավտոտրանսպորտի փոխադրումը դիզելային և գազային վառելիքի։

Ըստ երևույթին նորովի պետք է մոտենալ նաև ամբողջությամբ վերցված արդյունահանման ճյուղին։ Արդեն այսօր դրանց ընկնում է կապիտալ ներդրումների առյուծի բաժինը, բայց չէ որ հումքի և էներգատու նյութի պահանջարկը կաճի։ Հետևաբար, ամբողջ ժողովրդական տնտեսության հաջողությունները մեծապես պայմանավորված կլինեն արդյունահանող արդյունաբերության արդյունավետության բարձրացմամբ։ Դրա ուղին գիտատեխնիկական առաջընթացի արագացումն է, օգտակար հանածոների կոմպլեքսային, խոր վերամշակումը, երկրորդային ռեսուրսների ավելի լայն կիրառումը։

Այդ խնդիրների հրատապությունը կապված է այն բանի հետ, որ խոսքը վերաբերում է անվերականգնելի հարստություններին։ Դրանց ճիշտ, խնայողական օգտագործման համար մենք պատասխանատվություն ենք կրում ո՛չ միայն ներկա սերնդի, այլև գալիք սերունդների հանդեպ։ Եվ դա ոչ ոք իրավունք չունի մոռանալու։

Մեծ հեռանկարներ է բացում արտադրական կարողությունների՝ մեքենաների, սարքավորումների, տրանսպորտային միջոցների օգտագործման բարելավումը։ Պարապուրդների կրճատում, հերթափոխայնության գործակցի բարձրացում, էներգիա և նյութեր խնայող տեխնոլոգիական սխեմաների ստեղծում. ահա թե ինչի վրա պետք է կենտրոնացնել ջանքերը։

Ութսունական թվականների պայմաններում հատուկ նշանակություն է ստանում աշխատանքային ռեսուրսների նկատմամբ հոգատար, խնայողական վերաբերմունքը։ Դա բարդ գործ է, որը պահանջում է տնտեսական, տեխնիկական, սոցիալական, դաստիարակչական բնույթի շատ խնդիրների լուծում։

Խնայողության, այն ամենի ավելի լրիվ և ռացիոնալ գտագործման ուղղությամբ կողմնորոշումը, ինչ ունի երկիրը, պահանջում է նոր մոտեցում ցուցաբերել տնտեսավարման շատ հարցերի նկատմամբ։ Մասնավորապես դա նշանակում է, որ հարկավոր է կատարելագործել և ամրապնդել համապատասխան ճյուղերի «վերին հարկերը»— մետալուրգիայում այսպես կոչված չորրորդ փուլը, շինարարության մեջ հարդարման աշխատանքները, թեթև արդյունաբերության մեջ եզրափակող արտադրությունները։ Դրանցով է մեծապես որոշվում արտադրանքի որակը, իսկ երբեմն՝ նաև քանակը։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի մի շարք պլենումներում շեշտվել է. մեր հետագա առաջընթացն ավելի ու ավելի մեծ չափով պայմանավորված կլինի բոլոր առկա ռեսուրսների՝ աշխատանքի, հիմնական ֆոնդերի, վառելիքի և հումքի, դաշտերի ու ֆերմաների արտադրանքի հմուտ և արդյունավետ օգտագործմամբ։

Այժմ մենք, ընկերնե՛ր, ի վիճակի ենք լուծելու ամենամեծ և ամենաբարդ



խնդիրները։ Բայց տնտեսական քաղաքականության առանցքը դառնում է, թվում է թե, մի հասարակ և շատ առօրեական գործ՝ հոգատար վերաբերմունքը հանրային բարիքի նկատմամբ, այն ամենը լիովին, նպատակահարմար օգտագործելու ունակությունը, ինչ մենք ունենք։ Դրան պետք է նպատակամղված լինեն աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնությունը, կուսակցական-մասսայական աշխատանքը։ Դրան պետք է նպատակամղված լինեն թե՛ տեխնիկական քաղաքականությունը, թե՛ կապիտալ ներդրումների քաղաքականությունը և թե պլանային, հաշվետվական ցուցանիշների սիստեմը։

Կուսակցության Կենտրոնական կոմիտեն համագումարի պատգամավորներին կոչ է անում հաստատել այս հետևությունը՝ որպես ՍՄԿԿ-ի տնտեսական ստրատեգիայի առաջիկա ժամանակաշրջանի կարևորագույն սկզբունքներից մեկը։ (Երկարատև ծափահարություններ)։

Էկոնոմիկան պետք է լինի խնայողական. այսպիսին է ժամանակի պահանջը։ (Ծափահարություններ)։

## Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը դուրս բերել գիտության ու տեխնիկայի առաջավոր բնագծեր

Այն պայմանները, որոնցում ժողովրդական տնտեսությունը զարգանալու է 80-ական թվականներին, ավելի ու ավելի հրամայական են դարձնում գիտատեխնիկական առաջընթացի արագացումը։ Հարկ չկա որևէ մեկին համոզել, թե որքան մեծ նշանակություն ունի գիտությունը։ Կոմունիստների կուսակցությունը ելնում է այն բանից, որ առանց գիտության՝ նոր հասարակության կառուցումը պարզապես աներևակայելի է։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն հանդես է գալիս հօգուտ այն բանի, որ այսուհետ ևս բարձրանան ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի դերն ու պատասխանատվությունը, բարելավվի գիտական հետազոտությունների ամբողջ սիստեմի կազմակերպումը։ Այդ սիստեմը պետք է լինի զգալիորեն ավելի ճկուն և շարժուն, անպտուղ լաբորատորիաներ և ինստիտուտներ չհանդուրժող։ Հարկավոր է ավելի ուշադիր վերաբերվել նաև գիտության կարիքներին, գիտական հիմնարկություններն ապահովել սարքավորումներով ու սարքերով, ընդլայնել փորձարարական արտադրությունները։

Երկիրն զգում է այն բանի խիստ կարիքը, որ «մեծ գիտության» ջանքերը տեսական պրոբլեմների մշակման հետ մեկտեղ ավելի մեծ չափով կենտրոնացվեն ժողովրդատնտեսական արմատական հարցերի լուծման վրա, այնպիսի հայտնագործությունների վրա, որոնք կարող են իրոք հեղափոխական փոփոխություններ մուծել արտադրության մեջ։

Գիտնականների առավելագույն ուշադրությունը պահանջող գործնական խնդիրների հստակ բանաձևումը ամենից առաջ կենտրոնական պլանավորող և տնտեսական մարմինների, գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի գործն է։ Դրա հետ մեկտեղ գիտությունն ինքն էլ պետք է մշտապես լինի «անդորրը վրդովող», ցույց տալով, թե ո՛ր տեղամասերում է նկատվել լճացում և որոնք են ետ մնացել, թե որտե՛ղ է գիտելիքների ժամանակակից մակարդակը հնարավորություն տալիս առաջ շարժվելու ավելի արագ, ավելի հաջող։ Պետք է մտածել, թե այդ աշխատանքը ինչպես դարձնել կառավարման մեխանիզմի անբաժանելի մաս։

Այսօր վճռական, առավել սուր տեղամասը գիտական հայտնագործությունների և գյուտերի ներդրումն է։ Հարկավոր է գիտահետազոտական և նախագծային-կոնստրուկտորական աշխատանքները տնտեսապես ու կազմակերպորեն ավելի սերտ միացնել արտադրության հետ։ Մենք ունենք այդ բանի

հիանալի օրինակներ՝ ԶԻԼ-ը՝ Մոսկվայում, օպտիկամեխանիկական միավորումը և «Էլեկտրոսիլան» Լենինգրադում, Ե. Օ. Պատոնի անվան ինստիտուտը Կիևում և շատ ուրիշներ։

Սակայն դեռ հաճախ հարկ է լինում հանդիպել հեռանկարային մշակումների յուրացման գործում անթույլատրելի դանդաղկոտության, խոսքը վերաբերի պողպատի անընդհատ լցմանը թե՛ փոշեմետալուրգիային, հաստատուն հոսանքի հաղորդման եպակի գծերին, թե՛ գերամուր արհեստական թելերի ըստացմանը։ Հարկավոր է պարզել, թե մենք ինչ պատճառներով ենք երբեմն ձեռքից բաց թողնում մեր առաջնությունը, մեծ գումարներ ծախսում արտասահմանից այնպիսի տեխնիկայի և տեխնոլոգիայի գնման համար, որպիսիք լիովին կարող ենք արտադրել ինքներս, ընդ որում՝ հաճախ ավելի բարձրորակ։

Հարկավոր է բարձրացնել գերատեսչությունների, ձեռնարկությունների, ինստիտուտների ղեկավարների անձնական պատասխանատվությունը արտադրանքի նոր տեսակների արտադրության, նոր, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման համար։ Հարկավոր է վերացնել այն ամենը, ինչ նորի ներդրման պրոցեսը դարձնում է դժվարին, դանդաղ, հիվանդագին։ (Ծափահարություններ)։ Արտադրությունը պետք է կենսականորեն շահագրգռված լինի, որ ավելի արագ ու ավելի լավ յուրացնի գիտնականների և կոնստրուկտորների մտքի պտուղները, նրանց աշխատանքի պտուղները։ Այդ խնդրի լուծումը, իհարկե, հասարակ գործ չէ, պահանջում է հնացած սովորույթների և ցուցանիշների հեղաբեկում։ Բայց դա միանգամայն անհրաժեշտ է երկրի համար, ժողովրդի համար, մեր ապագայի համար։

Մյուս մոմենտը արտադրանքի որակի նկատմամբ պահանջների մակարդակն է։ Կարծում եմ, որ այն պետք է լինի ամենաբարձրը։ Համապատասխանություն համաշխարհային և հայրենական լավագույն նմուշներին. դրանից պակասին մենք չենք կարող ու չպիտի համաձայնենք։ Մենք պետք է մեզ ընտելացնենք այդ բանին, դրան հարկավոր է հասնել՝ վճռականորեն հրաժարվելով հնացած, ետ մնացած, բուն կյանքի կողմից գնազեղչված ամեն ինչից։ (Ծափահարություններ)։

Եվս մի հարց։ Լուծելով այն խնդիրները, որ մենք դրել ենք մեր առջև, այլևս չի կարելի համակերպվել մի շարք ճյուղերի՝ թեթև, սննդի, բուժական արդյունաբերության, գյուղատնտեսական մեքենաշինության և մեքենաշինության մի քանի այլ տեսակների գիտական և կոնստրուկտորական բազայի ետ մնալու հետ։ Հավանաբար արժե, որ գիտությունների ակադեմիան, գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեն, մինիստրությունները աշխատանք կատարեն տարբեր ճյուղերի գիտական և կոնստրուկտորական բազայի գնահատման ուղղությամբ, առաջարկություններ անեն գիտական ուժերի որոշակի վերախմբավորման վերաբերյալ։ Մենք իրավունք ունենք այստեղ ակնկալել նաև հատկապես ուժեղ գիտական բազա ունեցող ճյուղերի, այդ թվում՝ պաշտպանական ճյուղերի օգնությունը։

Կարճ ասած, ընկերնե՛ր, արտադրության հետ գիտության սերտ ինտեգրացումը արդի դարաշրջանի հրամայական պահանջն է։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն համոզված է, որ գիտության և տեխնիկայի գործիչները, ինժեներները և նախագծողները, ճյուղերի և արտադրությունների ղեկավարները ամեն ինչ կանեն այս պահանջի բարձրության վրա գտնվելու համար։ (Ծափահարություններ)։

Գիտատեխնիկական առաջընթացի հիմքերի հիմքը գիտության զարգացումն է։ Բայց նորի առջև դռները լայնորեն բացել կարող է ամենից առաջ մեքենաշինությունը։ Այն առաջավորը, ինչ ստեղծում է գիտական և ինժեներական միտքը, մեքենաշինությունը կոչված է անհապաղ յուրացնել, մարմնավորել բարձրարդյունավետ, հուսալի մեքենաների, սարքերի, տեխնոլոգիական գծերի մեջ։ Հիրավի հեղափոխական հնարավորություններ են բացում փոքրածավալ էլեկտրոնային կառավարող մեքենաների, արդյունաբերական ռոբոտների ստեղծումը և արմատավորումը։ Դրանք պետք է ամենալայն կիրառություն գտնեն։



Այսօր նկատի ունենալով հինգ, տասը տարվա հեռանկարը, մենք չենք կարող մոռանալ, որ հենց այդ տարիներին կհիմնվի ու կստեղծվի ժողովրդատնտեսական այնպիսի ստրուկտուրա, որով երկիրը կթևակոխի քսանմեկերորդ դարը։ Այն պետք է մարմնավորի նոր հասարակության հիմնական հատկանիշներն ու իդեալները, լինի պրոգրեսի ավանգարդում, մարմնավորի գիտության ու արտադրության ինտեգրացումը, ստեղծագործական մտքի և ստեղծագործական աշխատանքի անխախտ դաշինքը։ (Ծափահարություններ)։

## Ժողովրդի բարեկեցության բարձրացման գլխավոր ուղղությունները

Ընկերնե՛ր։ Տասնմեկերորդ հնգամյակի և ամբողջությամբ վերցրած 80-ական թվականների համար կուսակցությունն առաջադրում է ժողովրդի բարեկեցության հետագա վերելքի լայն ծրագիր։ Այդ ծրագիրն ընդգրկում է սովետական մարդկանց կյանքի բոլոր կողմերի բարելավումը— սպառում և բնակարան, կուլտուրա և հանգիստ, աշխատանք և կենցաղի պայմաններ։

Նախատեսվում է ազգային եկամտի մեջ սպառման ֆոնդի տեսակարար կշիռը 1985 թվականին հասցնել 77,3 տոկոսի։ Հիշեցնեմ, որ 1980 թվականին դա կազմում էր 75,3 տոկոս։ Էապես կմեծանան սպառման հանրային ֆոնդերը։ Աշխատավարձի բարձրացման և բնակչությանը տրվող մյուս վճարումների ու արտոնությունների ավելացման կենտրոնացված միջոցառումների համար նախատեսված է հնգամյակում հատկացնել ավելի քան 16 միլիարդ ռուբլի։ Կբարձրացվի բանվորների, ծառայողների, կոլտնտեսությունների անդամների տարիքային և հաշմանդամության կենսաթոշակների նվազագույն չափը, ինչպես նաև կիրականացվեն բնակչության սոցիալական ապահովության հետագա բարելավման այլ միջոցառումներ։ Կմեծացվի պետական օգնությունը երեխաներ ունեցող ընտանիքներին։

Նախատեսված է ձեռնամուխ լինել այնպիսի կարևոր միջոցառման անցկացմանը, ինչպիսին է բանվորների և ծառայողների նվազագույն աշխատավարձը ամսական 80 ռուբլու հասցնելը, նրանց դրույքների ու ռոճիկների բարձրացումը։ (Ծափահարություններ)։ 1981—1985 թվականներին ամսական միջին աշխատավարձը կբարձրանա 13—16 տոկոսով և կհասնի 190—195 ռուբլու։ Հանրային տնտեսությունից կոլտնտեսականների եկամուտները կավելանան 20—22 տոկոսով։ Նախատեսված է ընդլայնել աշխատավարձային մի շարք արտոնություններ՝ արևելյան առանձին շրջաններում աշխատանքի ստաժի համար հավելավճարումներ, շրջանային գործակիցներ։

Իհարկե, աշխատավորների կենսամակարդակի բարձրացումը չի հանգեցվում դրամական եկամուտների աճին։ Այժմ, ինչպես գտնում է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, առաջին պլան է մղվում բնակչությանը պարենի, ինչպես նաև լայն սպառման արդյունաբերական ապրանքների մատակարարումը բարելավելու խնդիրը։

Վերջին հնգամյակների ընթացքում սննդամթերքների արտադրությունն ավելացել է։ Դրա հետ մեկտեղ կուսակցության Կենտրոնական կոմիտեն, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, լավ իմանալով յուրաքանչյուր հանրապետության, յուրաքանչյուր մարզի դրությունը, տեսնում են, որ բնակչությանը պարենի մատակարարման հետ կապված դժվարություններ դեռևս կան։ Այդ կապակցությամբ ձեռնարկվել և ձեռնարկվում են միջոցներ ինչպես ներքին ռեսուրսների, այնպես էլ արտաքին առևտրի հաշվին։

Պրոբլեմի արմատական լուծման նպատակով անհրաժեշտ է համարվել մշակել հատուկ պարենային ծրագիր։ Այն պետք է ապահովի գյուղատնտեսական մթերքների արտադրության զգալի ավելացում։ Այն պետք է գյուղատնտե-

սությունն ավելի սերտորեն միացնի այն ճյուղերի հետ, որոնք զբաղվում են գյուղատնտեսական մթերքների պահպանմամբ ու վերամշակմամբ։ Եվ, իհարկե, առևտրի հետ։ Այլ կերպ ասած, այդ ծրագրի նպատակն է հնարավորին չափ ավելի սեղմ ժամկետներում լուծել բնակչությանը մթերքների անխափան մատակարարման խնդիրը։ Ծրագրի մշակումը նոր է սկսվել, ուստի ավելի շատ հիմքեր կան ուշադրությունը սևեռելու այս բնագավառում ծառացած հարցերի վրա։

Պարենային ծրագրի հիմքը գյուղատնտեսության հետագա վերելքն է։ Գյուղատնտեսության բնագավառում առաջիկա աշխատանքի գլխավոր ուղղությունները նշվեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումի որոշումներում։ Դրանք պահպանում են իրենց ուժը։

Առաջին խնդիրն է ավելացնել գյուղատնտեսական այն մթերքների արտադրությունը, որոնց պակասը հատկապես շոշափելի խափանումներ է առաջացնում մատակարարման գործում։ Ես նկատի ունեմ ամենից առաջ միսը և անասնապահական մյուս մթերքները։

Նախատեսվում է տասնմեկերորդ հնգամյակում մսի արտադրությունն ավելացնել ավելի քան երեք միլիոն տոննայով և 1985 թվականին այն հասցնել տարեկան 18,2 միլիոն տոննայի։ Բայց դա նվազագույնն է։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն դիմում է հանրապետությունների, երկրամասերի և մարզերի կուսակցական կազմակերպություններին, շրջանային կուսակցական կազմակերպություններին, գյուղի բոլոր աշխատավորներին. անասնապահությունը այսօր հարվածային ճակատ է գյուղում։ (Ծափահարություններ)։ Հարկավոր է, ընկերնե՛ր, առավելագույն հաստատակամություն, առավելագույն նախաձեռնություն և ճկունություն հանդես բերել, օգտագործել բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները նախատեսված պլանները ո՛չ միայն կատարելու, այլև էապես գերակատարելու համար։

Գլխավոր դժվարությունը կերի պակասն է։ Հիմնական ուղղությունների նախագծով նախատեսվում է տասնմեկերորդ հնգամյակում հացահատիկի տարեկան միջին արտադրությունը հասցնել 238—243 միլիոն տոննայի։

Հաշվի առնելով, որ պարենային հացահատիկի պահանջարկը բավարարվում է լիովին, շեշտը պետք է դրվի ֆուրաժային հացահատիկային կուլտուրաների աճեցման վրա։ Հացահատիկային կուլտուրաների համախառն բերքի մեջ դրանց բաժինը պետք է զգալիորեն մեծանա։

Նպատակահարմար է մասնավորապես հատիկացու եգիպտացորենի, ինչպես նաև սոյայի ցանքատարածությունները ընդլայնել Մոլդավիայում, Ուկրաինայի հարավային մարզերում, Հյուսիսային Կովկասում, Միջին Ասիայում և Անդրկովկասում։ Երկրի շատ շրջաններ լավ պայմաններ ունեն ոլոռի, գարու և վարսակի մշակման համար։ Մի խոսքով, ժամանակն է ակտիվորեն ձեռնամուխ լինել ապահովելու պլանաչափ անցումը հացահատիկային ցանքատարածության ավելի ռացիոնալ կառուցվածքին, հաշվի առնելով բնատնտեսական պայմանները։ Այդ գործում վճռական խոսքը պատկանում է գիտությանը և մասնագետներին։

Հացահատիկի հետ մեկտեղ հարկավոր է, իհարկե, ավելացնել կոշտ և հյութալի կերի, սպիտակուցային կերախառնուրդների արտադրությունը։ Միաժամանակ հարկավոր է բարելավել անասունների ցեղայնությունը և բարձրացնել նրանց մթերատվությունը, զարգացնել արդյունաբերական թռչնաբուծությունը։

Ընկերնե՛ր։ Եթե խոսելու լինենք ողջ գյուղատնտեսության մասին, ապա նրա առջև ծառացած է այն նույն գլխավոր պրոբլեմը, ինչ և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում— արդյունավետության և որակի բարձրացումը։ Մենք այսուհետև էլ գյուղին կհատկացնենք ֆինանսական և նյութական խոշոր ռեսուրսներ, կշարունակենք այդ ճյուղի պլանաչափ փոխադրումը ինդուստրիալ հիմքի վրա։ Բայց հիմա ծանրության կենտրոնը, և դա 80-ական թվականներին ագրարային քաղաքականության տարբերիչ առանձնահատկությունն է, տեղափոխվում է կապիտալ ներդրումների փոխհատուցման վրա, գյուղատնտեսության մթերատվության աճի, ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր ճյուղերի հետ նրա կապերի խորացման և կատարելագործման վրա։



Խոսքը վերաբերում է այն բանին, որ վճռականորեն բարձրացվի հողերի, հատկապես մելիորացված հողերի, մեքենաների, պարարտանյութերի, կերի օգտագործման արդյունավետությունը, ավելացվի բոլոր կուլտուրաների բերքատվությունը։ Դա պահանջում է ավելի մեծ ուշադրություն նվիրել կադրերի որակավորման բարձրացմանը, գիտության հանձնարարականներին, համաշխարհային և հայրենական փորձի ուսումնասիրմանը և օգտագործմանը։ Խոսքը վերաբերում է նաև գյուղատնտեսության տեխնիկական զինման հետագա աճին, գյուղին մատակարարվող մեքենաների ու սարքավորումների արտադրողականության, դիմացկունության և հուսալիության բարձրացմանը, բույսերի պաշտպանության քիմիական միջոցների և պարարտանյութերի որակի բարձրացմանը, գյուղական շինարարության բարելավմանը։

Վերջապես, դժվար է պատկերացնել արդյունավետ ագրոարդյունաբերական կոմպլեքս և ժամանակակից գյուղ՝ առանց զարգացած ճանապարհային ցանցի, հուսալի տրանսպորտի, էլևատորների, պահեստների, սառնարանների, տարային տնտեսության։ Այդ օղակներից ցանկացածում կարգուկանոնի բացակայությունը, ետ մնալը անխուսափելիորեն անդրադառնում են վերջնական արդյունքի քանակի և որակի վրա։

Արդեն այսօր գյուղատնտեսության կողմից արտադրվող մթերքների ծավալները հնարավորություն են ընձեռում նկատելիորեն բարելավելու բնակչությանը պարենային ապրանքների շատ տեսակների մատակարարումը։ Օրինակ, անցած հնգամյակում բնակչության մեկ շնչին ընկնող բանջարեղենի և մրգի տարեկան միջին սպառումն զգալիորեն ավելի դանդաղ էր ավելանում, քան դրանց արտադրությունը։ Եվ դրա հիմնական պատճառը կորուստներն են։ Հետևաբար, շարունակելով ավելացնել բանջարեղենի ու մրգի արտադրությունը, հարկավոր է բարելավել դրանց փոխադրումը, պահպանումը և վերամշակումը։ Այդ գործով զբաղվելը կոլտնտեսությունների և սովխոզների, պտուղ-բանջարեղենի տնտեսության մինիստրության ուղղակի խնդիրն է։ Հանրապետությունների, երկրամասերի և մարզերի կուսակցական և սովետական մարմինները, համապատասխան կենտրոնական գերատեսչությունները պետք է համակողմանի աջակցություն ցույց տան նոր մինիստրությանը։

Օրակարգում դրված են առավել արժեքավոր սննդամթերքների տեսականու ընդլայնումը, դրանց արտադրության ավելացումը և որակի բարձրացումը։ Իսկ դա պահանջում է զարգացնել վերամշակող արդյունաբերության կարողությունները, այն զինել ժամանակակից, բարձրարտադրողական սարքավորումներով։ Կարծում եմ, որ հարկավոր է հնգամյա պլանում նախատեսել վերոհիշյալ ճյուղերի համար ներդրումների ավելի նկատելի աճ։ Վստահ եմ, որ դա լիակատար հավանության կարժանանա կուսակցության ու ժողովրդի կողմից։ (Ծափահարություններ)։

Եվ, իհարկե, արդյունավետության պարտադիր բաղադրատարրը կոլտնտեսությունների և սովխոզների աշխատանքի տնտեսական պայմանների հետագա կատարելագործումն է։ Բոլոր պլանների, բոլոր ծրագրերի հաջողությունը պայմանավորված է գործի նկատմամբ վերաբերմունքով, գյուղի աշխատավորների բարեխիղճ աշխատանքով, ուրեմն նաև՝ բարոյական ու նյութական խթանման սիստեմով։

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը վերջերս այդ հարցի վերաբերյալ ընդունեցին ծավալուն որոշում։ Որոշման մեջ դատապարտվում է կուսակցական ու սովետական որոշ աշխատողների կողմից կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական գործունեությանը ցույց տրվող անհիմն միջամտության պրակտիկան։ Որոշման մեջ ամենայն որոշակիությամբ ասվում է. հանրապետությունների, երկրամասերի և մարզերի, շրջանների, կոլտնտեսությունների և սովխոզների համար պետք է սահմանվի գյուղատնտեսական մթերքների գնումների հինգ տարվա միասնական պլան՝ բաշխելով ըստ տարիների։ Միաժամանակ սահմանվում է այն տնտեսությունների խթանման սիստեմ, որոնք նախորդ հնգամյակի տարեկան միջին մակարդակի համեմատությամբ կավելացնեն արտադրանքի վաճառքը պետությանը։ Դրա շնորհիվ պետք

է ումեղանա նյութական խթանների կապը վերջնական արդյունքների հետ և առանձնապես որակական ցուցանիշների բարելավման հետ։

Շատ կարևոր է, որ թվարկված միջոցառումները հետևողականորեն կենսագործվեն։ (Ծափահարություններ)։

Սոցիալիստական գյուղատնտեսության հիմքը եղել ու մնում են կոլտնտեսությունները և սովխոզները։ Բայց դա ամենևին չի նշանակում, թե կարելի է անտեսել անձնական օժանդակ տնտեսությունների հնարավորությունները։ Փորձը վկայում է, որ նման տնտեսությունները կարող են էական նեցուկ լինել մսի, կաթի և որոշ այլ մթերքների արտադրության գործում։ Աշխատավորներին պատկանող այգիները, բանջարանոցները, թռչունները, անասունները մեր ընդհանուր հարստության մի մասն են։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն անհրաժեշտ համարեց որոշում ընդունել անձնական օժանդակ տնտեսությունների զարգացման լրացուցիչ միջոցառումների մասին։ Որոշմամբ նախատեսվում է ստեղծել այնպիսի նյութական և բարոյական պայմաններ, որոնք բարձրացնեին քաղաքացիների շահագրգռությունը օժանդակ տնտեսությունների վարման և ամենից առաջ անասունների ու թռչունների աճեցման գործում։ Հարկավոր է օգնել կոլտնտեսականներին, սովխոզների բանվորներին՝ նրանց տրամադրելով մատղաշ և կեր։ Դա վերաբերում է թե՛ նրանց, ովքեր սեփական անասուններ են պահում և թե նրանց, ովքեր պատրաստ են աճեցնել կոլտնտեսություններին ու սովխոզներին պատկանող անասուններ։ Այդպիսի փորձ կա մի շարք հանրապետություններում ու մարզերում, և այն արժանի է տարածման։

Ամենայն աջակցության պետք է արժանանան նաև արդյունաբերական ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունները։

Թույլ տվեք համագումարի անունից խորին համոզմունք հայտնել, որ գյուղատնտեսական մթերքների արտադրության և վերամշակման բնագավառում գյուղի աշխատավորները, արդյունաբերության աշխատողները կբազմապատկեն իրենց ջանքերը, կնվաճեն նոր, բարձր բնագծեր։ (Ծափահարություններ)։

Բարեկեցության բարձրացման ասպարեզում կուսակցության ջանքերում առաջնակարգ նշանակություն են ստանում ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ընդլայնումը և դրանց որակի բարելավումը, ծառայությունների ոլորտի զարգացումը։

Այստեղ մենք հասել ենք հաջողությունների, և ոչ քիչ հաջողությունների։ Սակայն կուսակցական համագումարում կարևոր է ուշադրությունը կենտրոնացնել այլ բանի վրա։ Չէ՞ որ փաստ է, որ տարիներ շարունակ չեն կատարվում ժողովրդական սպառման շատ ապրանքների, առանձնապես գործվածքեղենի, տրիկոտաժեղենի, կաշվե կոշիկի, կահույքի, հեռուստացույցների թողարկման պլանները։ Պատշաճ տեղաշարժեր չկան նաև որակի, վերջնամշակման, տեսականու մեջ։ Հարկավոր է այդ բոլոր գործերում առանց հապաղելու կարգուկանոն հաստատել։

Անհրաժեշտ է նախատեսել ժամանակակից սարքավորումներով թեթև արդյունաբերության զինում, բարելավել դրան հումքի և նյութերի մատակարարումը, կատարելագործել ճյուղի պլանավորումն ու կառավարումը։ Հարկավոր է լավացնել թեթև արդյունաբերության աշխատողների աշխատանքի ու կենցաղի պայմանները։ Պետք է բարձրացվի առևտրի դերը ապրանքների տեսականու և որակի որոշման մեջ, հարկավոր է նաև զգալիորեն բարձրացնել կոմունալ-կենցաղային ձեռնարկությունների տեխնիկական զինումը, դրանք ավելի համաչափ բաշխել երկրում, դրանց համար պատրաստել որակյալ կադրեր։

Հիմնական ուղղություններով նախատեսված ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և սպասարկումների զարգացման ծրագրի շրջանակներում մեծ դեր է հատկացվում ծանր արդյունաբերության ճյուղերին։ Դրանք արտադրում են ժողովրդական սպառման ոչ պարենային ապրանքների կեսից ավելին։

Վերջերս փոխվեց քիմիական արդյունաբերության կառավարման կառուցվածքը։ Դա ուղղակի առնչություն ունի այն հարցի հետ, որի մասին ես խոսում եմ։ Մենք սպասում ենք, որ քիմիական արդյունաբերության նոր մինիստրությունը էական տեղաշարժեր կկատարի սինթետիկ գործվածքների ու թելերի, պլաստմասսաների, ներկերի, այլ նյութերի արտադրության մեջ, որոնք հարկավոր են սպառողական ապրանքների քանակն ավելացնելու, իսկ որ գլխավորն է՝ որակը բարելավելու համար։

Եվ, վերջապես, հսկայական նշանակություն ունի նախաձեռնությունը տեղերում։ Թերևս ժողովրդական տնտեսության ոչ մի այլ ոլորտում տեղական հնարավորությունները, տեղական ռեզերվները այնպիսի դեր չեն խաղում, ինչպես ամենօրյա սպառողական պահանջարկի բավարարման, բնակչության սպասարկման գործում։ Հարկավոր է, որ բոլոր մակարդակներում ժողովրդական դեպուտատների սովետները կոնկրետ միջոցներ ձեռնարկեն արդյունաբերական ապրանքների արտադրությունն ու վաճառքը բարելավելու, ծառայությունների ոլորտը զարգացնելու համար։

Ինչպես գիտեք, ընկերնե՛ր, հաջորդ հնգամյակի հիմնական ուղղությունների նախագծում նախատեսված է որոշակիորեն արագացնել «բ» խմբի զարգացման տեմպերը. դրանք որոշ չափով կգերազանցեն «ա» խմբի աճի տեմպերից։ Դա լավ է։ Խնդիրն այն է, որ ստեղծվի սպառողական ապրանքների և բնակչության սպասարկումների իրոք ժամանակակից, ժողովրդի պահանջմունքներին համապատասխանող արտադրություն։

Ավարտելով այս թեման, կցանկանայի դուրս գալ զուտ տնտեսական պրոբլեմատիկայի շրջանակներից և հարցը դնել մի փոքր ավելի լայնորեն։ Այն, ինչի մասին մենք խոսում ենք՝ սննդամթերքները, ժողովրդական սպառման ապրանքները, ծառայությունների ոլորտը, միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց ամենօրյա կյանքի հարցեր են։ Խանութ, ճաշարան, լվացքատուն, քիմմաքրման կետ. այստեղ մարդիկ լինում են ամեն օր։ Ի՞նչ կարող են նրանք գնել։ Ինչպե՞ս են նրանց ընդունում։ Ինչպե՞ս են նրանց հետ խոսում։ Ինչքա՞ն ժամանակ են նրանք կորցնում ամեն տեսակի կենցաղային հոգսերի համար։ Մարդիկ մեր աշխատանքի մասին մեծ չափով դատում են նրանով, թե ինչպես են լուծվում այդ հարցերը։ Դատում են խիստ, պահանջկոտությամբ։ Եվ դա, ընկերնե՛ր, հարկավոր է հիշել։ (Ծափահարություններ)։

Կոնկրետ մարդու նկատմամբ, նրա կարիքների և պահանջմունքների նկատմամբ կոնկրետ հոգատարությունը կուսակցության տնտեսական քաղաքականության սկիզբն է և վերջնակետը։ Ես սա հիշեցնում եմ, որպեսզի մեկ անգամ էլ շեշտեմ հետևյալ պարզ, բայց և շատ կարևոր միտքը. բնակչության համար ապրանքների արտադրությունը, ծառայությունների ոլորտի զարգացումը կուսակցական առաջնահերթ գործ է։ Հենց այդպես էլ հարկավոր է վերաբերվել դրան։ (Երկարատև ծափահարություններ)։

## Կատարելագործել էկոնոմիկայի ղեկավարման մեթոդները

Ընկերնե՛ր։ Մեր առջև ծառացած պրոբլեմների լուծումը, մեր ունեցած հնարավորությունների օգտագործումը մեծապես պայմանավորված են ժողովրդական տնտեսության ղեկավարման մակարդակով, պլանավորման ու կառավարման մակարդակով։ Դա, հավանաբար, լավ է զգում յուրաքանչյուր տնտեսավար, յուրաքանչյուր կուսակցական աշխատող։

Արդի պայմաններում մեծապես աճում են կարգապահության նշանակությունը, անձնական պատասխանատվության նշանակությունը, հատկապես՝ տնտեսական, սովետական և կուսակցական ղեկավարների պատասխանատվությունը։ Համապետական շահերը միշտ պետք է բարձր լինեն առանձին մինիստրությունների և ձեռնարկությունների շահերից։ Ղեկավարներին իրավունքներ և այն էլ մեծ իրավունքներ են տրվում նրա համար, որ նրանք լրիվ չափով օգ-

տագործեն դրանք։ Բայց, ընդամին, ամեն մի ղեկավար պետք է մշտապես հիշի իր բարձր պատասխանատվությունը՝ պատասխանատվությունը մարդկանց հանդեպ, որոնց նա վստահված է ղեկավարելու, կուսակցության և ժողովրդի հանդեպ։

Եվ առաջին բանը, որի մասին ուզում եմ ասել, պետական պլանների կատարման համար պատասխանատվությունն է։ Կուսակցությունը միշտ էլ պլանը դիտել է որպես օրենք։ Եվ ո՛չ միայն այն պատճառով, որ այն հաստատվում է Գերագույն սովետի կողմից։ Պլանը օրենք է, որովհետև միայն դրա ճիշտ կատարումն է ապահովում ժողովրդական տնտեսության ներդաշնակ աշխատանքը։ Խոսենք անկեղծորեն. այդ ակնհայտ ճշմարտությունն սկսել է մոռացության մատնվել։ Լայն մասշտաբներ է ընդունել պլանների ճշգրտման պրակտիկան դրանց նվազեցման միտումով։ Նման պրակտիկան կազմալուծում է տնտեսությունը, բարոյալքում կադրերին, նրանց վարժեցնում անպատասխանատվության։

Ես ամենից քիչ եմ հակված լինելու ձևական դիրքերում։ Կարող են լինել և լինում են դեպքեր, երբ պլանների ճշգրտումն անհրաժեշտ է։ Բայց դրանք պետք է լինեն սոսկ միայն դեպքեր, բացառիկ հանգամանքներ։ Իսկ երբ հարկադրված ես ավելի ու ավելի հաճախ հանդիպել բացառությունների, հասկանալի տագնապ է առաջանում։ Մենք չափից ավելի հաճախ չե՛նք տեղի տալիս նրանց կամքին, ովքեր ցանկանում են հեշտացնել իրենց կյանքը՝ առաջավորների համբավ վայելել, ստանալ պարգևներ, փաստորեն չկատարելով պլանները։

Ըստ երևույթին, հասել է ժամանակը խստացնելու պահանջները ինչպես պլանային կարգապահության, այնպես էլ բուն պլանների որակի նկատմամբ։ Պլանը, անպայման, պետք է լինի ռեալ, հաշվեկշռված, բայց այն անպայմանորեն էլ պետք է կատարվի։ (Ծափահարություններ)։

Կենսական խնդիր է նաև տարբեր գերատեսչությունների գործողությունների անհամաձայնեցվածության հաղթահարումը։

ՍՄԿԿ XXV համագումարում ասվեց համասեռ և փոխկապակցված ճյուղերի խմբերի կառավարման սիստեմ ստեղծելու անհրաժեշտության մասին։ Այդ նպատակով ՍՍՀՄ պետպլանում ստեղծված են միջճյուղային կոմպլեքսային ստորաբաժանումներ։ Վերջերս կազմվեց Արևմտյան Սիբիրի նավթի-գազի կոմպլեքսի զարգացման հարցերի ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի հանձնաժողով, ինչպես նաև ՍՍՀՄ պետպլանին առընթեր միջգերատեսչական տերիտորիալ հանձնաժողով, որը գտնվելու է Տյումենում։ Դրանք ճիշտ ուղղությամբ արված քայլեր են։ Դրանք օգնում են ավելի լավ կառավարելու տերիտորիալ-արտադրական կոմպլեքսները, ավելի լավ հաշվի առնելու և զուգորդելու ռեգիոնալ ու ճյուղային շահերը։ Այդ աշխատանքը պետք է շարունակել։

Հատկապես կուզենայի ասել միավորումների և ձեռնարկությունների մակարդակով կառավարման մասին։ Ինչպես գիտեք, փորձարկվել են զանազան տարբերակներ, զանազան սխեմաներ։ Մեծ ու հարուստ փորձ է կուտակվել։ Եվ հենց այդ փորձն էլ ասում է, որ որոնումները պետք է շարունակել։ Դրանց ընդհանուր ուղղությունը, ինչպես ինձ թվում է, միավորումների ու ձեռնարկությունների ինքնուրույնության, տնտեսական ղեկավարների իրավունքների և պատասխանատվության ընդլայնումն է։

Իհարկե, միաժամանակ պետք է ստեղծվեն պատշաճ տնտեսական իրադրություն, կազմակերպական և կառավարչական հարաբերություններ։ Հենց դա են նախատեսում տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման, պլանավորման սիստեմի բարելավման մասին 1979 թվականին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած որոշումները։ Հարկավոր է դրանք հետևողականորեն կենսագործել։ Եվ միևնույն ժամանակ պետք է առաջ ընթանալ՝ լուծելով կուտակված պրոբլեմները։

Պետք է ընդհանրապես նշել, որ կառավարման կազմակերպական կառուց-



վածքների կատարելագործումը քարացածություն չի հանդուրժում։ Տնտեսու-
թյան կառավարման կենդանի, զարգացող օրգանիզմը չի կարելի հարմարեցնել
կայունացած, սովորական ձևերին։ Ընդհակառակն, ձևերը պետք է համապա-
տասխանեցվեն փոփոխվող տնտեսական խնդիրներին. միայն այսպես կարող է
դրվել հարցը։
Կյանքի առաջադրած խնդիրները պահանջում են զարգացնել տեսությու-
նը, տնտեսական գիտությունը, այն մոտեցնել տնտեսական պրակտիկայի
կարիքներին։ Պետք է մոբիլիզացնել մեր ամբողջ հասարակության ստեղծա-
գործական պոտենցիալը։ Կենտրոնում և տեղերում, ժողովրդական տնտեսու-
թյան բոլոր օղակներում, բոլոր բջիջներում պետք է խորանա ծագող պրոբլեմ-
ների ըմբռնումը, պետք է ավելի լավ ի հայտ բերվեն և օգտագործվեն առկա
հնարավորությունները։
Խոսքը աշխատանքի այնպիսի ոճ մշակելու մասին է, որի մեջ կատարո-
ղականությունը, կարգապահությունը օրգանապես զուգակցվեն համարձակ
նախաձեռնության և ձեռներեցության հետ։ Գործիմացությունն ու գործարա-
րությունը՝ մեծ նպատակների ձգտման հետ։ Թերությունների նկատմամբ քըն-
նադատական վերաբերմունքը՝ մեր ընտրած ուղու պատմական առավելություն-
ների նկատմամբ անսասան վստահության հետ։ (Ծափահարություններ)։
Ընկերնե՛ր։ Էկոնոմիկայի ղեկավարման հարցերը ոչ թե պարզապես տըն-
տեսական, այլ քաղաքական, կուսակցական հարցեր են։ Վաղուց է հայտնի,
կուսակցական լոզունգները, ծրագրերը մարմնավորվում են մասսաների գոր-
ծունեության մեջ։ Որքան ավելի խոր է այն բարեփոխությունը, որ մենք ուզում
ենք իրագործել, ասում էր Վ. Ի. Լենինը, «այնքան ավելի շատ հետաքրքրու-
թյուն և գիտակցական վերաբերմունք պետք է հարուցել դրա հանդեպ, նորա-
նոր միլիոնների և տասնյակ միլիոնների համոզել դրա անհրաժեշտության
մեջ» (Երկեր, հ. 31, էջ 630)։ Տնտեսական քաղաքականությունը, որը կուսակ-
ցությունն առաջադրում է տասնմեկերորդ հնգամյակի և 80-ական թվական-
ների համար, արտացոլում է սովետական ժողովրդի արմատական, կենսական
շահերը։ Միահյուսվելով, միաձուլվելով մասսաների ստեղծագործությանը,
նախաձեռնությանը, եռանդին, այն ապահովում է մեր հասարակության անշեղ
առաջընթացը աշխատավորների բարեկեցության աճի, կոմունիզմի նյութա-
տեխնիկական բազայի ստեղծման ուղիով։ (Բուռն երկարատև ծափահարու-
թյուններ)։

## III.

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒ ՀՈԳԵՎՈՐ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԵՎ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Ընկերնե՛ր։ Հասուն սոցիալիզմի պայմաններում ավելի ու ավելի է սեր-
տանում էկոնոմիկայի առաջընթացի փոխադարձ կապը հասարակության սո-
ցիալ-քաղաքական և հոգևոր պրոգրեսի հետ։ Ելնելով դրանից, ՍՄԿԿ Կենտրո-
նական կոմիտեն մշտապես ուշադրություն է դարձրել սովետական հասարա-
կության սոցիալ-դասակարգային և ազգային կառուցվածքի զարգացման հար-
ցերին, սոցիալիստական ապրելակերպի, մեր պետականության և դեմոկրա-
տիայի կատարելագործմանը։

այլ այն պատճառով, որ այնտեղ ավելի դժվար է բնակարան ստանալը, երեխային մանկապարտեզում տեղավորելը, քիչ են կուլտուրական կենտրոնները։ Ահա թե ինչու մենք ծրագրում ենք այս հնգամյակում այդ շրջաններում է՛լ ավելի արագ տեմպերով իրականացնել բնակարանների, ամբողջ սոցիալ-կուլտուրական կոմպլեքսի շինարարությունը, բարելավել մասսայական պահանջարկ վայելող ապրանքների մատակարարումը բնակչությանը։ Բոլորը կհամաձայնեն, որ վիճակն այստեղ պետք է փոխել, ընդ որում՝ ամենամոտ ժամանակներս։ (Երկարատև ծափահարություններ)։

Միջին Ասիայում, Կովկասի մի շարք շրջաններում, ընդհակառակն, կա բանվորական ուժի ավելցուկ, հատկապես գյուղում։ Ուրեմն, հարկավոր է այդ վայրերի բնակչությանն ավելի ակտիվորեն ներգրավել երկրի նոր տերիտորիաների յուրացման գործում։ Եվ, իհարկե, այնտեղ զարգացնել ժողովրդական տնտեսության համար անհրաժեշտ արտադրությունները, ավելի լայնորեն պատրաստել տեղաբնակ ազգության որակյալ բանվորներ, նախ և առաջ՝ գյուղական երիտասարդության թվից։

Կուսակցության XXV համագումարի ցուցումներին համապատասխան, Կենտրոնական կոմիտեն լուրջ ուշադրություն էր դարձնում արդյունավետ դեմոգրաֆիական քաղաքականության մշակմանն ու իրականացմանը, ազգաբնակչության՝ վերջին ժամանակներս սրված պրոբլեմներին։ Դրանց լուծման գլխավոր ուղին ընտանիքի, նորապսակների, ամենից առաջ կնոջ նկատմամբ հոգատարության ուժեղացումն է։ (Ծափահարություններ)։ Չէ՞ որ բոլորի համար պարզ է, որ երբեմն այնքան էլ դյուրին չէ մայրական պարտականությունները զուգորդել արտադրությանը և հասարակական կյանքին ակտիվորեն մասնակցելու հետ։

Տասներորդ հնգամյակում ձեռնարկվեցին աշխատող կանանց աշխատանքի, ընտանեկան հանգստի պայմանները, կենցաղային և կուլտուրական սպասարկումը բարելավելու մի շարք միջոցառումներ։ Սակայն պետք է ուղղակի ասել. դեռևս նկատելի բեկում չի կատարվել։ Հարկավոր են ավելի լայն և ներգործուն միջոցառումներ։ Եվ դրանք, ինչպես հայտնի է, նախատեսվում են հիմնական ուղղություններում։ Խոսքը վերաբերում է մինչև մեկ տարին լրանալը երեխային խնամելու համար մասնակիորեն վճարովի արձակուրդ սահմանելուն. փոքրահասակ երեխաների մայրերի համար ոչ լրիվ աշխատանքային օրվան, մանկական նախադպրոցական հիմնարկությունների, երկարօրյա խմբերով դպրոցների ցանցի, կենցաղի ամբողջ ծառայության ընդլայնմանն ու աշխատանքի բարելավմանը։ Նախատեսվում է բարձրացնել երեխաների համար տրվող նպաստները, հատկապես՝ երկրորդ և երրորդ երեխան ծնվելու կապակցությամբ։ Հասկանալի է, մենք չենք կարող միանգամից իրականացնել այն ամենը, ինչ կկամենայինք։ Բայց համառորեն կորոնենք այդ բոլոր պրոբլեմների լուծման ուղիներ։ Ընդ որում, իհարկե, հարկավոր է ուշիուշով հաշվի առնել տարբեր հանրապետությունների և ռեգիոնների վիճակի առանձնահատկությունները։

Եվ բնակչության մի խմբի՝ կենսաթոշակառուների մասին ևս։ 70-ական թվականների ընթացքում նրանց թիվն ավելացել է՝ 40-ից հասնելով 49 միլիոն մարդու։ Կուսակցությունը և պետությունը մշտապես հոգ են տանում աշխատանքի ու պատերազմի վետերանների առողջության ու բարօրության մասին։ Միայն կենսաթոշակների և նպաստների վճարման վրա ներկայումս տարեկան ծախսվում է ավելի քան 43 միլիարդ ռուբլի։ Վերջին ժամանակներս մենք բարձրացրինք նաև կենսաթոշակների չափերը։ Սակայն այդ հավելումները չէին վերաբերում ավելի վաղ հանգստի գնացած անձանց։ Սկսած ընթացիկ հնգամյակից՝ նախատեսվում է աստիճանաբար շտկել այդ վիճակը։

Բայց պետք է նաև այլ բան անել՝ մեր վետերաններին ավելի լայնորեն ներգրավել աշխատանքային գործունեության մեջ, մասնավորապես, սպասարկման ոլորտում։ Իհարկե, նրանց հնարավորությունների համեմատ, և հաշվի առնելով ժողովրդական տնտեսության պահանջները։ Ժամանակակից պայմաններում դա շատ կարևոր խնդիր է։

Ընկերնե՛ր։ Անշեղորեն ամրապնդվում է մեր բազմազգ հայրենիքի բոլոր



ժողովուրդների եղբայրական բարեկամությունը։ Մեր կուրսն է՝ մեծացնել յուրաքանչյուր հանրապետության նյութական ու հոգևոր պոտենցիալը և, դրա հետ մեկտեղ, այն առավելագույնս օգտագործել ամբողջ երկրի ներդաշնակ զարգացման համար։ Այդ ճանապարհին մենք հիրավի պատմական նվաճումներ ենք ձեռք բերել։

Սովետական իշխանության առաջին տարիներից մեր տնտեսական ու սոցիալական քաղաքականությունը կառուցվում էր այնպես, որ Ռուսաստանի նախկին ազգային ծայրամասերը հնարավորին չափ արագ բարձրացվեին մինչև նրա կենտրոնի զարգացման մակարդակը։ Եվ այդ խնդիրը հաջողությամբ լուծվեց։ Այստեղ կարևորագույն դեր խաղացին երկրի բոլոր ազգերի սերտ համագործակցությունը և ամենից առաջ ռուս ժողովրդի անշահախնդիր օգնությունը։ (Ծափահարություններ)։ Հետամնաց ազգային ծայրամասեր, ընկերնե՛ր, ներկայումս գոյություն չունեն։ (Երկարատև ծափահարություններ)։

Վերցնենք, օրինակ, Ղազախստանը։ Այն էկոնոմիկայի ու կուլտուրայի իսկական ծաղկման ժամանակաշրջան է ապրում։ Միայն տասներորդ հնգամյակում այստեղ գործարկվել են 250-ից ավելի ժամանակակից արդյունաբերական ձեռնարկություններ, խոշոր արտադրամասեր և արտադրություններ։ Սովորական է դառնում ղազախստանյան միլիարդ փութ հացահատիկը, որը Ռուսաստանի Ֆեդերացիայի և Ուկրաինայի հացահատիկի հետ կազմում է երկրի պարենային ֆոնդի հիմքը։

Բոլորին հայտնի են Միջին Ասիայի հանրապետություններում կատարված սոցիալ-տնտեսական վիթխարի փոփոխությունները։ Կհիշատակեմ միայն մեկ փաստ։ Այստեղ, ուր մինչև Հոկտեմբերը հողագործին հայտնի էր միայն ձեռքի մաշող աշխատանքը, ներկայումս հարյուր հեկտար վարելահողին ընկնող էներգազինվածությունը կրկնակի գերազանցում է միութենական միջին ցուցանիշները։

Տպավորիչ են 70-ական թվականներին Ռուսաստանի Ֆեդերացիայի հսկայական շրջաններ ընդգրկած վերափոխումների մասշտաբները։ Երկրի էկոնոմիկայում ծանրակշիռ ավանդ են ներդնում Ուկրաինայի և Բելոռուսիայի աշխատավորները։ Արագ տեմպերով է զարգանում Անդրկովկասյան հանրապետությունների ժողովրդական տնտեսությունը։ Աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացման գործում նկատելի հաջողությունների են հասել Մերձբալթիկայի և Մոլդավիայի աշխատավորները։

Ընդհանրապես, ընկերնե՛ր, հաշվետու ժամանակաշրջանում ընդունված որոշումների և դրանցով նախատեսված միջոցառումների պարզ թվարկումն իսկ ցայտունորեն ցույց է տալիս թե որքան լայն ու բազմաբնույթ է այն հարցերի շրջանակը, որոնցով զբաղվել են ՍՄԿԿ Կենտկոմը և կառավարությունը, լուծելով մեր երկրի բոլոր հանրապետությունների զարգացման, ՍՍՀ Միության ամրապնդման հասունացած պրոբլեմները։ Դրանցից են թե՛ ՌՍՖՍՀ-ի ինքնավար օկրուգների մասին նոր օրենքը, թե՛ ոռոգման սիստեմների ընդլայնումը Միջին Ասիայում, եղջերվաբուծության զարգացումը Ծայրագույն Հյուսիսի շրջաններում և ոչխարաբուծությանը՝ Կիրգիզիայում, Սևանա լճի ռեսուրսների պահպանումը և բազմաթիվ այլ լուրջ գործեր։ Հետևողականորեն են իրագործվում Աբխազիայի, Տուվայի և Բուրյաթիայի, Հյուսիսի ժողովուրդների բնակության շրջանների էկոնոմիկան ու կուլտուրան զարգացնելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները։

Հատկապես կցանկանայի խոսել ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտու մասին։ Մի շարք պատճառների բերումով այդ շրջանը որոշ այլ շրջանների համեմատությամբ գտնվել է ավելի դժվարին պայմաններում։ ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունը նախատեսել և իրականացնում են ոչ սևահողային գոտու զարգացման լայն միջոցառումներ։ Այդ խնդիրն այն աստիճան բարդ է ու անհետաձգելի, որ այն պետք է լուծել բոլոր հանրապետությունների համատեղ ջանքերով և հնարավորին չափ սեղմ ժամկետներում։ (Ծափահարություններ)։ Այդպիսի փորձ մենք ունենք, և այն էլ հարուստ փորձ։ Հիշենք թեկուզև Թուրքսիբի, Ուրալ-Կուզբասի շինարարությունը, խոպանի յուրացումը, Տաշքեն-

դի վերականգնումը: Ահա այդպես համերաշխորեն և եռանդագին էլ հարկավոր է աշխատել նաև ոչ սևահողային գոտում:

Սովետական ազգերի միասնությունն այսօր ամուր է, քան երբևէ: (Երկարատև ծափահարություններ): Դա, իհարկե, չի նշանակում, թե ազգային հարաբերությունների ոլորտում բոլոր հարցերն արդեն լուծված են: Այնպիսի խոշոր բազմազգ պետության զարգացման դինամիկան, ինչպիսին մերն է, քիչ պրոբլեմներ չի ծնում, որոնք պահանջում են կուսակցության զգայուն վերաբերմունքը:

Սովետական հանրապետությունների բնակչության կազմը բազմազգ է: Եվ բնական է, որ բոլոր ազգերը դրանց կուսակցական և պետական մարմիններում պատշաճ ներկայացուցչության իրավունք ունեն: Հասկանալի է՝ խստիվ հաշվի առնելով յուրաքանչյուր մարդու գործնական ու գաղափարաքաղաքական հատկությունները:

Վերջին տարիներս մի շարք հանրապետություններում զգալիորեն ավելացել է ոչ բնիկ ազգությունների քաղաքացիների թիվը: Նրանք ունեն իրենց յուրահատուկ պահանջները լեզվի, կուլտուրայի և կենցաղի բնագավառներում: Հանրապետությունների կոմկուսների Կենտկոմները, կուսակցության երկրկոմներն ու մարզկոմները պետք է ավելի խորամուխ լինեն նման հարցերին, ժամանակին առաջարկեն դրանց լուծման ուղիներ:

Մեր երկրում հարգվում են ազգային զգացմունքները, յուրաքանչյուր մարդու ազգային արժանապատվությունը: ՍՄԿԿ-ն պայքարել է և միշտ էլ վճռականորեն կպայքարի սոցիալիզմի բնույթին խորթ այնպիսի երևույթների դեմ, ինչպիսիք են շովինիզմը կամ նացիոնալիզմը, ամեն տեսակ նացիոնալիստական խեղաթյուրումների դեմ, լինի դա, ասենք, հակասեմիտիզմ թե սիոնիզմ:

Մենք դեմ ենք այն միտումներին, որոնց նպատակն է արհեստականորեն վերացնել ազգային առանձնահատկությունները: Բայց մենք նույնքան էլ անթույլատրելի ենք համարում դրանց արհեստական ուռճացումը: Կուսակցության սրբազան պարտքն է՝ աշխատավորներին դաստիարակել սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, միասնական սովետական մեծ հայրենիքին պատկանելու հպարտ զգացումի ոգով:

Կյանքը համոզում է, որ մեր հանրապետություններից յուրաքանչյուրի տնտեսական ու սոցիալական ինտենսիվ զարգացումն արագացնում է դրանց բազմակողմանի մերձեցման պրոցեսը: Տեղի են ունենում ազգային կուլտուրաների ծաղկում ու փոխհարստացում, սոցիալական ու ինտերնացիոնալ նոր հանրության՝ միասնական սովետական ժողովրդի կուլտուրայի ձևավորում: Այդ պրոցեսը մեզանում ընթանում է այնպես, ինչպես որ այն պետք է ընթանա սոցիալիզմի օրոք՝ հավասարության, եղբայրական համագործակցության ու կամավորության հիման վրա: Կուսակցությունը խստիվ հետևում է ազգային քաղաքականության լենինյան այդ սկզբունքների պահպանմանը: Դրանցից մենք երբեք չենք նահանջի: (Ծափահարություններ):

## 2. ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԻ, ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԿԵՐՊԱՎՈՐՄԱՆ ՆՅՈՒԹԱԿԱՆ ՈՒ ՀՈԳԵՎՈՐ ՀԻՄՔԵՐԻ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ

Ընկերնե՛ր: Զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում ավարտվում է բոլոր հասարակական հարաբերությունների վերակառուցումը նոր կարգին ներքնապես բնորոշ կոլեկտիվիստական սկզբունքների հիման վրա: Այդ վերակառուցումն ընդգրկում է թե՛ նյութական, թե՛ հոգևոր ոլորտը, մեր կյանքի ողջ կացութաձևը:

Սովետական հասարակությունը աշխատանքի մարդկանց հասարակություն է: Կուսակցությունը և պետությունը շատ ջանքեր են գործադրել և գոր-



ծադրում են, որ մարդու աշխատանքը դարձնեն ո՛չ միայն ավելի արտադրողական, այլև ավելի բովանդակալից, հետաքրքրական, ստեղծագործական: Եվ այստեղ կարևորագույն դեր է կոչված խաղալու ձեռքի, նվազ որակյալ ու ծանր ֆիզիկական աշխատանքի վերացումը: Մեզ մոտ դեռևս դրանով զբաղված են միլիոնավոր մարդիկ: Դա ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալական լուրջ պրոբլեմ է: Լուծել այն՝ նշանակում է վերացնել աշխատանքը յուրաքանչյուր մարդու կենսական առաջին պահանջմունքի վերածելու ճանապարհին եղած էական պատնեշները: (Ծափահարություններ):

Սոցիալիզմը աշխատանքի նկատմամբ ծնում է նոր վերաբերմունք: Դրա ցայտուն դրսևորումներից մեկը եղել և մնում է սոցիալիստական մրցությունը: Չկա մի գործարան, կոլտնտեսություն, կառույց, որոնց չհասներ դրա կենարար շունչը: Մեծ է այդ հայրենասիրական շարժման թափը, որն այսօր ընդգրկել է ավելի քան 190 միլիոն մարդ: Դրա մեջ թրծվում են հասարակական պարտքի գիտակցման, աշխատանքային հերոսության ու անձնվիրության օրինակներ: Մրցության հաղթողներից շատերը, արտադրության առաջավորները, որոնք հայտնի են ամբողջ երկրին, այսօր այստեղ են, այս դահլիճում: (Երկարատև ծափահարություններ):

Սոցիալիստական մրցությունը մասսաների ստեղծագործությունն է: Իր բուն էությամբ այն հիմնված է մարդկանց բարձր գիտակցականության ու նախաձեռնության վրա: Հենց այդ նախաձեռնությունն է օգնում բացահայտելու և գործադրելու արտադրության ռեզերվները, բարձրացնելու աշխատանքի արդյունավետությունն ու որակը: Բայց գործնականում, ինչ մեղքներս թաքցնենք, սոցիալիստական պարտավորությունները երբեմն մշակվում են ոչ թե վարից, այլ «իջեցվում են» վերից, վերադաս մարմինների կողմից: Դա վնասում է աշխատանքային մրցության բուն ոգուն: Դրա անկյունաքարը պետք է դառնալ հանդիպական պլաններն ու մյուս համանման ձեռնարկումները «վարից վեր» գծով՝ աշխատավոր, բրիգադ, ձեռնարկություն, ճյուղ: Եվ հետո միայն պետք է այդ նախաձեռնությունը «կցել» պետական պլանին: Դա համապատասխանում է ինչպես սոցիալիստական մրցության էությանը, այնպես էլ մեր էկոնոմիկայի պլանային բնույթին:

Բոլորին հասկանալի է, որ մարդիկ ավելի լավ, ավելի սիրով են աշխատում այնտեղ, որտեղ մշտական հոգատարություն են զգում իրենց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման նկատմամբ: Գործարանը, ֆերման նույն տունն են, որտեղ մարդն անցկացնում է իր կյանքի առնվազն մեկ երրորդը: Այստեղ ամեն ինչ պետք է լինի հարմարավետ, ժամանակակից՝ աշխատատեղերից մինչև կենցաղային հարմարություններն ու ճաշարանները:

Ցավոք սրտի, մեզանում դեռևս կան տնտեսական այնպիսի ղեկավարներ, որոնք նման հարցերին վերաբերվում են որպես ինչ-որ ոչ կարևոր, երկրորդական հարցերի: Դա արմատապես սխալ, վնասակար դիրք է: Եվ Կենտկոմի քաղբյուրոն բազմիցս խստիվ հաշիվ է պահանջել այդպիսի ղեկավարներից, ներառյալ մինիստրները: Պետք է խստագույն վերահսկողություն ապահովել այն բանի նկատմամբ, որ ձեռնարկությունների, քաղաքների ու գյուղերի սոցիալական զարգացման համար հատկացվող միջոցները ճշտորեն օգտագործվեն ըստ նշանակության, ամբողջովին և սահմանված ժամկետներում: Արդյունաբերական նոր օբյեկտների գործարկման մասին տեղերից տրվող զեկույցներում սովորաբար չի նշվում, թե ինչ է արված նրանց համար, ովքեր աշխատելու են այդտեղ, թե քանի բնակարան, մանկապարտեզ, գրադարան և պրոֆիլակտորիում է կառուցված: Եկեք պայմանավորվենք այդպիսի զեկույցները իրական համարել միայն այն դեպքում, եթե կատարվում է նաև օբյեկտում բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության՝ պլանով նախատեսված ծրագիրը: Կարծում եմ, համագումարը կպաշտպանի նման հարցադրումը: (Երկարատև ծափահարություններ):

Ընկերնե՛ր: Կուսակցության հատուկ ուշադրության առարկան եղել և մնում է բաշխման ոլորտը: Այստեղ կատարվող փոփոխությունների ուղղության և խորության մասին են վկայում, օրինակ, այսպիսի փաստերը: 70-ական թվականներին բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների այն ընտանիք-

ների թիվը, որոնցում մեկ մարդուն ամսական ընկնում է ավելի քան հարյուր ռուբլի, աճել է գրեթե եռակի։ Եվ ընդհակառակն։ Այն ընտանիքների թիվը, որոնցում մեկ շնչին ընկնող եկամուտը ամսական 50 ռուբլուց պակաս է, կրճատվել է գրեթե նույն չափով։ Այսինքն՝ տեղի է ունենում աշխատավորների բոլոր խմբերի կենսամակարդակների ո՛չ միայն աճ, այլև մերձեցում։ Այս տենդենցը կուժեղանա, և այնքան ավելի արագ, որքան ավելի արդյունավետ կաշխատեն բոլորը։

Սոցիալիզմի օրոք բաշխման գլխավոր չափանիշը կարող է լինել միայն աշխատանքը՝ դրա քանակն ու որակը։ Ցավոք, գործնականում միշտ չէ, որ այդպես է լինում։ Ամեն տեսակ հավասարարությունը, ըստ էության սոսկ աշխատանքի ներկայանալու համար, այլ ոչ թե դրա ռեալ արդյունքների դիմաց աշխատավարձ դուրս գրելը, չվաստակած պարգևավճարներ տալը՝ այդ ամենը անչափ վնասակար է անդրադառնում թե՛ արտադրական ցուցանիշների և թե մարդկանց հոգեբանության վրա։

Նյութական ու բարոյական խթանների մեր սիստեմը պետք է միշտ և ամենուրեք ապահովի յուրաքանչյուրի աշխատանքային ներդրման արդարացի և օբյեկտիվ գնահատականը։ Պետք է ամեն կերպ խրախուսել բարեխիղճ աշխատողներին, բոլորովին անպետք աշխատանքի դեպքում լավ ապրելու ոչ մի սողանցք չթողնել անբանների և խոտանարարների համար։ Ով ուզում է ավելի լավ ապրել, նա պետք է ավելի շատ ու ավելի լավ աշխատի։ Սա, կարծում եմ, հասկանալի է բոլորին։ (Երկարատև ծափահարություններ)։

Մեզ մոտ գործազրկություն չկա։ Աշխատանքի իրավունքը գրանցված է մեր սահմանադրության մեջ և ռեալ կերպով ապահովված է։ Սակայն աշխատավորների բազմաթիվ առաջարկությունների հիման վրա սահմանադրության մեջ գրանցված է նաև այլ բան՝ հանրօգուտ աշխատանքից խուսափելն անհամատեղելի է սոցիալիզմի սկզբունքների հետ։ Իսկ դա նշանակում է, որ հարկավոր է կազմակերպական, ֆինանսական, իրավաբանական բոլոր միջոցներով ամուր փակել ամեն տեսակ սողանցքները պորտաբուծության, կաշառակերության, սպեկուլյացիայի առաջ, անաշխատ եկամուտների, սոցիալիստական սեփականության նկատմամբ ամեն տեսակ ոտնձգությունների առաջ։ (Ծափահարություններ)։

Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը որոշում ընդունեցին առևտրի ու հասարակական սննդի ձեռնարկությունների աշխատանքը բարելավելու, դրանց կադրերն ու նյութական բազան ամրապնդելու, առևտրի կանոններում, մթերքների և ապրանքների բաշխման գործում կայուն կարգ հաստատելու մասին։ Միաժամանակ կոնկրետ քայլեր են նախատեսված դեֆիցիտային ապրանքների հետ կապված մեքենայությունները վճռականորեն կասեցնելու, այդ ոլորտում ամեն տեսակ չարաշահումների դեմ համապատասխան պետական մարմինների պայքարն ակտիվացնելու, բանվորական վերահսկողությունն ուժեղացնելու համար։ Վստահ եմ, որ աշխատավորները լիովին հավանություն կտան այդ միջոցառումներին։ (Ծափահարություններ)։

Սովետական ապրելակերպի ամենաբնորոշ հատկանիշներից մեկը աճն է այն բարիքների, որ մարդիկ ստանում են սպառման հանրային ֆոնդերից։ Հինգ տարվա ընթացքում դրանք ավելացել են մոտավորապես մեկ երրորդով և միայն ընթացիկ տարում կկազմեն 121,5 միլիարդ ռուբլի։ Դրանք հսկայական միջոցներ են։ Դրանք օգտագործվում են աշխատավորների կենսապայմանների բարելավման, նրանց առողջության պահպանման, երեխաների կրթության, դաստիարակության, սոցիալական ապահովության և կուլտուրայի համար։ Եվ դրանք պետք է ծախսել արդյունավետ, մարդկանց համար առավելագույն օգտավետությամբ։

Մեր սոցիալական ծրագրում, ինչպես հայտնի է, կարևորագույն տեղ է գրավում բնակարանը։ Արդեն նշվեց, որ անցյալ հնգամյակում բնակարանային շինարարությունն իրականացվում էր հսկայական թափով։ Երկրում դրա ծավալները կպահպանվեն նաև այսուհետև։ Միևնույն ժամանակ մենք գիտենք. դեռևս ոչ քիչ ընտանիքներ են ապրում կոմունալ-անբարեկարգ բնակարաններում, տարիներով բնակարանի են սպասում շատ նորապսակներ։ Եվ քանի որ



այդ պրոբլեմը դեռևս այնքան էլ հասարակ չէ, ապա, նշանակում է բնակարանի բաշխման գործում հարկավոր է առանձնահատուկ ուշադրություն, օբյեկտիվություն, եթե կուզեք՝ օրինավորություն։ Ամենուրեք այն պետք է կատարվի հասարակական կազմակերպությունների մասնակցությամբ, դրանց հաստատուն վերահսկողությամբ։ Պետք է ավելի լայնորեն ծավալել նաև կոոպերատիվ շինարարությունը, կատարելագործել դրա ձևերը։ Դրա հետ մեկտեղ, պետք է ավելի խստորեն հաշիվ պահանջել նրանցից, ովքեր անպատասխանատու վերաբերմունք են ցույց տալիս բնակարանների օգտագործման ու պահպանման նկատմամբ։ Այստեղ կարգուկանոն հաստատելուն, կարծում եմ, կօգնեն բնակարանային օրենսդրության հիմունքները, որոնց նախագիծը լայնորեն քննարկվում է հասարակայնության կողմից։

Հաշվետու ժամանակաշրջանում ամբողջությամբ վերցված հաջողությամբ էին կատարվում կուսակցության XXV համագումարի ցուցումները ժողովրդական կրթության զարգացման վերաբերյալ։

Ձեռք է բերված կարևոր բնագիծ՝ ավարտված է անցումը ընդհանուր պարտադիր միջնակարգ կրթության։ Այսօր գլխավորն այն է, որ դպրոցում բարձրացվի ուսուցման, աշխատանքային ու բարոյական դաստիարակության որակը, արմատախիլ արվի ձևականությունը ուսուցիչների և աշակերտների աշխատանքի արդյունքները գնահատելիս, գործնականում ամրապնդվի կյանքի հետ ուսման կապը, բարելավվի աշակերտների նախապատրաստումը հանրօգուտ աշխատանքին։ Այստեղ, իհարկե, վճռական դերը պատկանում է ուսուցչին։ Նրա աշխատանքի, կենցաղի, որակավորման բարձրացման նկատմամբ ուշադրության հարցում չպետք է ժլատ լինել։ Բայց և աճում են պահանջները նրա աշխատանքի հանդեպ։

Բարելավման կարիք ունի նաև դպրոցական ծրագրերի և դասագրքերի որակը։ Ճիշտ են նշում, որ դրանք չափից ավելի բարդացված են։ Դա դժվարացնում է ուսուցումը, հանգեցնում երեխաների չարդարացված գերբեռնվածության։ Լուսավորության մինիստրությունը, մանկավարժական գիտությունների ակադեմիան պետք է անհապաղ շտկեն այդ վիճակը։

Հայտնի են բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության սովետական սիստեմի հաջողությունները։ Միայն վերջին հինգ տարում այն մեր ժողովրդական տնտեսությանը տվել է 10 միլիոն որակյալ մասնագետ։

Միևնույն ժամանակ այդ սիստեմում շատ բան կարելի է և պետք է բարելավել։ Ես նկատի ունեմ նախ և առաջ դասավանդման որակը, արտադրության հետ կապի ամրապնդումը։ Պետք է ավելի լրիվ օգտագործել բուհերի գիտական պոտենցիալը, որոնցում կենտրոնացված է գիտությունների մեր բոլոր դոկտորների և թեկնածուների գրեթե կեսը։ Ժողովրդական տնտեսության զարգացման համեմատ փոխվում է նաև այս կամ այն մասնագիտության կադրերի պահանջարկը։ Հետևաբար և բուհերում կադրերի պատրաստման պլանավորման սիստեմը պետք է զգայուն կերպով արձագանքի այդ փոփոխություններին։

XXV համագումարը սովետական մարդկանց առողջության նկատմամբ հոգատարությունը համարեց ամենակարևոր սոցիալական խնդիրներից մեկը։ ՍՄԿԿ Կենտկոմը և կառավարությունը 1977 թվականին ծավալուն որոշում ընդունեցին ժողովրդական առողջապահության հետագա բարելավման միջոցառումների մասին։ Դրա իրագործումը տալիս է իր արդյունքները։ Այսօր մեր պոլիկլինիկաները մեկ հերթափոխի ընթացքում կարող են կես միլիոնով ավելի շատ քաղաքացիներ ընդունել, քան հինգ տարի առաջ։ (Ծափահարություններ)։ Զգալիորեն զարգացել են մասնագիտացված բուժօգնությունը, սրտաբանական ծառայությունը։ Ավելի արդյունավետ է դարձել հիվանդությունների կանխարգելումը։

Բայց, այնուամենայնիվ, մնում են շատ թերություններ։ Պետք է էապես բարելավվի պոլիկլինիկաների, դիսպանսերների, ամբուլատորիաների աշխատանքը, որտեղ բուժվում է բոլոր հիվանդների 80 տոկոսը։ Ցավոք, մի շարք տեղերում դրանք ետ են մնացել բժշկագիտության հնարավորություններից, չեն բավականացնում կադրերը, հատկապես միջին ու կրտսեր անձնակազմի կադրերը, հնացել են սարքավորումները, պակասում են ժամանակակից դեղա-

դեպքում, երբ այն խարսխվում է սոցիալ-տնտեսական քաղաքականության ամուր հիմքի վրա:

Մենք նյութական ու հոգևոր մեծ հնարավորություններ ունենք անհատի առավել լրիվ զարգացման համար, և այսուհետև էլ կմեծացնենք դրանք: Բայց դրա հետ մեկտեղ կարևոր է, որ յուրաքանչյուր մարդ կարողանա խելացի օգտվել դրանցից: Իսկ դա, վերջին հաշվով, պայմանավորված է նրանով, թե ինչպիսին են անհատի հետաքրքրությունները, պահանջմունքները: Ահա թե ինչու մեր կուսակցությունը սոցիալական քաղաքականության կարևոր խնդիրներից մեկը համարում է դրանց ակտիվ, նպատակասլաց կերպավորումը:

Սովետական մարդիկ մեծ մասամբ աշխատում են ազնվորեն, հոգու նվիրումով: Նրանք իրավամբ և խելամտորեն են օգտվում բազմապիսի բարիքներից, որ նրանց տալիս է հասարակությունը, պահպանում ու բազմապատկում են մեր ժողովրդական սեփականությունը: Բայց մեզանում կան նաև այնպիսի մարդիկ, որոնք ձգտում են որքան կարելի է քիչ տալ պետությանը, բայց ավելի շատ կորզել նրանից: Հենց նման հոգեբանության հողի վրա էլ դրսևորվում են եսամոլությունն ու քաղքենիությունը, կուտակելու տենչը. ժողովրդի հոգսերի ու գործերի նկատմամբ անտարբերությունը: Հասարակությանը, ընտանիքին քիչ վնաս չի հասցնում հարբեցողությունը, որը, անկեղծ ասած, դեռևս մնում է որպես լուրջ պրոբլեմ: Այդ այլանդակ երևույթների դեմ ուղղված պայքարին պետք է ի սպաս դրվեն բոլոր աշխատավորական կոլեկտիվների, հասարակական բոլոր կազմակերպությունների, բոլոր կոմունիստների ջանքերը:

Ինչպես տեսնում ենք, ընկերնե՛ր, մենք դեռ մեծ աշխատանք ունենք կատարելու սոցիալիստական ապրելակերպը կատարելագործելու, արմատախիլ անելու համար այն ամենը, ինչը խանգարում է նոր մարդու կերպավորմանը: Դա կուսակցության սոցիալական քաղաքականության անկապտելի բաղկացուցիչ մասերից մեկն է, քաղաքականություն, որի նպատակը սովետական մարդկանց բարօրությունն է ու երջանկությունը:

## 3. ՍՍՀՄ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Ընկերնե՛ր: Սովետական հասարակության տնտեսական, սոցիալական ու հոգևոր կյանքում կատարված առավել էական փոփոխությունները, համաժողովրդական պետության խոր դեմոկրատիզմը խտացված արտահայտվել են ՍՍՀՄ նոր սահմանադրության մեջ: Բոլորս էլ հիշում ենք ժողովրդի ստեղծագործական ուժերի, նրա քաղաքացիական ակտիվության այն հսկայական վերելքը, որ առաջացրեց հիմնական օրենքի նախագծի քննարկումը:

ՍՍՀՄ սահմանադրության, և ապա միութենական ու ինքնավար հանրապետությունների սահմանադրությունների ընդունումից հետո նոր փուլ սկսվեց ժողովրդական դեպուտատների սովետների աշխատանքում:

Նկատելիորեն աշխուժացավ իշխանության բարձրագույն մարմինների՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի, հանրապետությունների գերագույն սովետների գործունեությունը: Միացնելով օրենսդրությունը, կառավարումն ու վերահսկողությունը, գերագույն սովետներն ակտիվորեն ուղղություն են տալիս մինիստրների խորհուրդների, մինիստրությունների ու գերատեսչությունների աշխատանքին: Դա նպաստում է թերությունները ժամանակին ի հայտ բերելուն ու վերացնելուն, բարձրացնում է պետական կյանքի ընդհանուր տոնուսը:

Մեծապես արդյունավետ է սահմանադրության հիման վրա կատարվող սովետական օրենսդրության նորացումը: Նոր օրենքները հնարավորություն են ընձեռում ավելի նրբորեն, ճշգրտությամբ կարգավորելու հասարակական հարաբերությունների տարբեր կողմերը: Օրենսդրության կատարելագործման աշխատանքը կշարունակվի: Այստեղ երեք ուղղություններ են առաջադրվում որպես առաջնահերթ— ժողովրդական տնտեսության ղեկավարումը, քաղաքա-



ցիների ու հասարակական կազմակերպությունների սահմանադրական իրավունքների իրականացումը, օրենքների ընդհանուր միութենական ժողովածուի հրատարակման ավարտումը:

Լավ օրենքներ, ընկերնե՛ր, մեզանում քիչ չեն ընդունվել: Այժմ առաջնահերթ գործը դրանց ճշգրիտ և անշեղ իրագործումն է:

Չէ՛ որ ամեն մի օրենք ապրում է լոկ այն ժամանակ, երբ այն կատարվում է, կատարվում է բոլորի կողմից և ամենուրեք:

Հետաքրքրական, նոր շատ բաներ են երևան եկել տեղական սովետների գործունեության մեջ: Չթուլացնելով ուշադրությունը տեղական տնտեսության, բնակչության սպասարկման հարցերի նկատմամբ, նրանք ավելի ու ավելի մեծ ավանդ են ներդնում տնտեսական ու սոցիալական զարգացման կոմպլեքսային բնույթի ապահովման մեջ: Սովետներն ավելի ու ավելի ակտիվ են կոորդինացնում ու վերահսկում իրենց տերիտորիաներում գտնվող ձեռնարկությունների ու կազմակերպությունների աշխատանքը: Սա, ընկերներ, շատ կարևոր է: Եվ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ամեն կերպ պաշտպանում է տեղական սովետների գործունեության հենց այդպիսի ուղղվածությունը:

Մենք ունենք գրեթե մեկ միլիոն կոմունիստ դեպուտատներ: Իրենց հեղինակությունը, փորձը նրանք պետք է օգտագործեն այն բանի համար, որ սովետի յուրաքանչյուր նստաշրջան, մշտական հանձնաժողովի յուրաքանչյուր նիստ վերածվի մարդկանց իսկական խորհրդի, առավել ճիշտ լուծումների կոլեկտիվ որոնման:

Շահագրգռություն ընդհանուր գործով, արտադրության զարգացմամբ, կարծիքների համադրում, անկեղծ ու սկզբունքային քննադատություն և ինքնաքննադատություն, յուրաքանչյուր քաղաքացու հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացում. ահա սովետական դեմոկրատիայի, բանող, գործող դեմոկրատիայի էությունը:

Սովետական դեմոկրատիայի անհրաժեշտ բաղկացուցիչ մասն է կառավարման մարմինների ու պաշտոնատար անձանց աշխատանքի համապարփակ ժողովրդական վերահսկողությունը: Ոչ մի խախտում, շարաշահումների, վատնողության, անկարգապահության ոչ մի փաստ չպետք է վրիպի ժողովրդական վերահսկիչների՝ տիրոջ հայացքից: Գործել ավելի եռանդագին, գործել ավելի հարձակողաբար. ահա թե նրանց ինչի է մղում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն:

Սոցիալիստական օրինականության ու իրավակարգի ամրապնդման ասպարեզում մեծ է արդարադատության, դատարանի, դատախազության, սովետական միլիցիայի մարմինների պատասխանատվությունը: Այդ մարմինների աշխատողների պրոֆեսիոնալ գիտելիքները պետք է զուգորդվեն քաղաքացիական արիության, անկաշառելիության և արդարամտության հետ: Միայն այդպիսի մարդիկ կարող են ըստ արժանվույն կատարել իրենց վրա դրված լուրջ պարտականությունները: Սովետական ժողովուրդը իրավունք ունի պահանջելու, որ նրանց աշխատանքը լինի առավել արդյունավետ, որ յուրաքանչյուր հանցագործություն ինչպես հարկն է քննվի, և մեղավորները արժանի պատիժ կրեն: Իրավակարգը պահպանող մարմինների համար այս գործում կապահովվի կուսակցության և, չեմ կասկածում, մեր ամբողջ հասարակայնության լիակատար պաշտպանությունը: (Ծափահարություններ):

Միջազգային ասպարեզում դասակարգային պայքարի սրությունը բարձր պահանջներ է ներկայացնում պետական անվտանգության մարմինների գործունեությանը, մեր չեկիստների կուսակցական կոփվածքին, նրանց գիտելիքներին և աշխատանքի ոճին: ՍՍՀՄ պետանվտանգության կոմիտեն աշխատում է օպերատիվորեն, պրոֆեսիոնալ բարձր մակարդակով, խստիվ պահպանելով սահմանադրության դրույթները, սովետական օրենսդրության նորմերը: Չեկիստներն զգոնությամբ ու աչալրջորեն հետևում են իմպերիալիստական հետախուզությունների մեքենայություններին: Նրանք վճռականորեն խափանում են այն մարդկանց գործունեությունը, ովքեր բռնում են հակապետական, թշնամական գործողությունների ուղին, ովքեր ոտնձգություն են կատարում սովետական մարդկանց իրավունքների, սովետական հասարակության շահերի դեմ: Եվ նրանց այդ աշխատանքն արժանանում է կուսակցության, մեր ամբողջ

Մեր հասարակության զարգացման, նրա սոցիալ-քաղաքական ու կուլտուրական կերպարանափոխման հետ միասին աճում, ամրապնդվում, առնականանում է կոմունիստների կուսակցությունը։

Հաշվետու ժամանակաշրջանում ՍՄԿԿ-ի անդամների թիվը ամբողջությամբ վերցված ավելացել է 1,8 միլիոնով։ Ներկայումս կուսակցության մեջ կա 17 միլիոն 480 հազար կոմունիստ։ Նրանց 43,4 տոկոսը բանվորներ են, 12,8 տոկոսը՝ կոլտնտեսականներ՝ 43,8 տոկոսը՝ տեխնիկական, գիտական ու ստեղծագործական մտավորականության ներկայացուցիչներ, լուսավորության, առողջապահության, կուլտուրայի, կառավարական ապարատի աշխատողներ, զինծառայողներ։

Անցած հինգ տարիներին ՍՄԿԿ-ի շարքերն են ընդունվել բանվոր դասակարգի ավելի քան մեկուկես միլիոն լավագույն ներկայացուցիչներ, որ կազմում է կուսակցական ամբողջ համալրման 59 տոկոսը։ Նոր ընդունվածների ավելի քան 10 տոկոսը կազմել են կոլտնտեսականները։ Շարունակվել է սովետական մտավորականության ներկայացուցիչների ներհոսը կուսակցության մեջ։Այդ տարիներին ՍՄԿԿ-ի մեջ ընդունվածների գրեթե երեք քառորդը լենինյան կոմերիտմիության անդամներ են։

Կուսակցության մեջ ընդունվել ցանկացողների թիվն աճում է։ Ավելի խստապահանջ է դարձել մոտեցումը կուսակցության նոր անդամների ընդունելության նկատմամբ։ Թեկնածուական ստաժն ավելի լավ է օգտագործվում ընդունվողների քաղաքական, գործարար և բարոյական հատկությունների ստուգման համար։ Բոլորը չէ, որ բռնում են այդ ստուգումը։ Հինգ տարում 91 հազար թեկնածուներ ՍՄԿԿ-ի անդամ չեն ընդունվել։ Սա փոքրիշատե նորմալ մաղում է։

Ինչպես արդեն նշվեց, կուսակցության շարքերն են գալիս սովետական ժողովրդի լավագույն, առաջավոր ներկայացուցիչները։ Սակայն երբեմն ՍՄԿԿ-ի շարքերն են ընկնում պատահական, անարժան մարդիկ։ Բերեմ այսպիսի թիվ։ Կոմունիստի կոչման հետ անհամատեղելի զանցանքների համար XXV համագումարից հետո կուսակցությունից վտարվել է գրեթե 300 հազար մարդ։

Հարկավոր է ամենայն ուժով շեշտել, որ մեր վերաբերմունքը նրանց նկատմամբ, ովքեր իրենց անվայել են պահում, խախտում են կուսակցության կանոնադրությունն ու կուսակցական բարոյականության նորմերը, եղել է և կլինի անհաշտ։ Ո՛չ մի ավելորդ ներողամտություն և ո՛չ ոքի նկատմամբ, երբ խոսքը վերաբերում է մեր կուսակցության պատվին ու հեղինակությանը, նրա շարքերի անաղարտությանը։ (Երկարատև ծափահարություններ)։

Հենց այսպիսի բարձր պահանջկոտությունն է ապահովում ՍՄԿԿ-ի կուռ միասնությունը, սովետական հասարակությանը գլխավորելու, սովետական ժողովրդին վստահորեն կոմունիզմի ուղիով առաջնորդելու նրա ունակությունը։

## 1. ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ՄԵԹՈԴՆԵՐԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ

Ընկերնե՛ր։ ՍՄԿԿ-ի ղեկավար դերի բարձրագույն արտահայտությունը կուսակցական համագումարներն են, որոնք ասես հարթում են սովետական հասարակության առաջընթաց շարժման գլխավոր երթուղին։ Դրա հետ միասին մեծ դեր է պատկանում Կենտրոնական կոմիտեի պլենումներին։

Հաշվետու ժամանակամիջոցում տեղի է ունեցել Կենտրոնական կոմիտեի տասնմեկ պլենում։ Պլենումները հրավիրվել են կանոնավորապես, քննարկումը կատարվել է գործարար կերպով, ինքնաքննադատաբար։ Մի խոսքով, մենք հետևել ենք լենինյան նորմերին ու ավանդույթներին։

Ինչպես արդեն ասացի, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումներում ամեն տարի վերլուծվել են տնտեսական զարգացման հիմնական միտումները։ Դրա հետ մեկտեղ քննարկվել են երկարաժամկետ բնույթի նաև այլ պրոբլեմներ։

ՍՍՀՄ սահմանադրության նախագծի կապակցությամբ 1977 թվականին հանգամանորեն քննարկվեցին հասուն սոցիալիզմի պայմաններում սոցիալիս-



տական պետականության, մեր ողջ հասարակարգի զարգացման հարցերը։ Կուսակցության ագրարային քաղաքականության հետագա մշակմանն էր նվիրված 1978 թվականի հուլիսին կայացած Կենտկոմի պլենումը։ 1980 թվականի հունիսյան պլենումում ճշգրտվեցին Սովետական Միության դիրքավորումները հիմնական արտաքին քաղաքական հարցերում, բարդացած միջազգային իրադրության մեջ լարվածության թուլացման համար մղվող պայքարի խնդիրները։

Հաշվետու ժամանակաշրջանում տեղի է ունեցել Քաղբյուրոյի 236 նիստ։ Նրա ամբողջ գործունեությունը կենտրոնացված է եղել ՍՄԿԿ XXV համագումարի և Կենտկոմի պլենումների որոշումների պրակտիկ կատարման հետ, ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառի նոր երևույթների հետ կապված հանգուցային մոմենտների վրա։

Քաղբյուրոյի քննարկմանը դրված հարցերը վաղօրոք մանրակրկիտ ուսումնասիրվել են։ Այդպիսի հարցերի դիապազոնն անչափ լայն է և բազմազան։ Դրանցից շատերի բարդության աստիճանը գնալով աճում է։ Քաղբյուրոն որոշ դեպքերում հատուկ հանձնաժողովներ է ստեղծել՝ տեղի ունեցող երևույթները համակողմանիորեն ուսումնասիրելու և ընդհանրացնելու, ինչպես նաև օպերատիվ կարգով համապատասխան գործնական միջոցներ ձեռնարկելու համար։

Նյութերը նախապատրաստելիս, ինչպես և քննարկման ընթացքում, արտահայտվել են, որ միանգամայն բնական է, տարբեր կարծիքներ, արվել են բազմաթիվ դիտողություններ ու առաջարկություններ։ Բայց բոլոր որոշումներն էլ ընդունվել են լիակատար միահամուռության ոգով։ Այդ միասնության մեջ է կոլեկտիվ ղեկավարման ուժը։ (Ծափահարություններ)։

Քաղբյուրոն մեր բազմամիլիոնանոց կուսակցության հիրավի մարտական շտաբն է։ Հենց այնտեղ է կենտրոնանում կուսակցության կոլեկտիվ բանականությունը և ձևավորվում կուսակցական քաղաքականությունը, որն արտահայտում է ամբողջ սովետական հասարակության, բոլոր կոմունիստների և անկուսակցականների շահերը։

Կադրերի ընտրություն, կատարման կազմակերպում և ստուգում, կուսակցական կյանքի փաստորեն բոլոր ընթացիկ հարցերը. հիմնականում այսպիսին է այն պրոբլեմների շրջանակը, որոնցով զբաղվել է Կենտկոմի Քարտուղարությունը։ Անցած ժամանակամիջոցում նա ունեցել է 250 նիստ։

Պլենումների, Քաղբյուրոյի, Քարտուղարության աշխատանքը ամբողջությամբ վերցված, ընկերնե՛ր, կրել է նպատակասլաց բնույթ, աչքի է ընկել բարձր կազմակերպվածությամբ։ Եվ այդ աշխատանքը խարսխվում է մարքսիզմ-լենինիզմի գրանիտյա հիմքի վրա։

Քաղբյուրոն և Կենտկոմի Քարտուղարությունը մշտապես հոգացել են հանրապետական, երկրամասային, մարզային, օկրուգային, քաղաքային ու շրջանային կուսակցական կազմակերպությունների դերի ու պատասխանատվության բարձրացման մասին։ Հանգամանորեն ուսումնասիրվել է գործերի վիճակը տեղերում, քննարկվել են կուսակցական շատ կոմիտեների հաշվետվությունները։ Համակողմանի, մանրակրկիտ քննարկման հիման վրա արվել են համակուսակցական նշանակություն ունեցող հետևություններ։

Յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության աշխատանքում կան արժեքավոր, ուսանելի շատ բաներ։ Հիշատակեմ միայն մի քանի հետաքրքրական փաստեր։

Մոսկվայի ու Լենինգրադի կուսակցական կազմակերպությունները լավ արդյունքների են հասել արտադրական կոլեկտիվների ստեղծագործական ակտիվության զարգացման և աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործում։ Հենց այդ քաղաքներում են ծնվել հայրենասիրական շատ նախաձեռնություններ, որոնք այնուհետև պաշտպանություն և տարածում են գտել ամբողջ երկրում։

Երկրագործության գիտական սիստեմը և առաջավոր պրակտիկան գյուղատնտեսական արտադրության մեջ արմատավորելու ուղղությամբ կուսկազմակերպությունների աշխատանքի ուժեղացման հետ են կապված Ղազախստանի հողագործների ու Ուզբեկստանի բամբակի դաշտերի աշխատավորների խոշոր նվաճումները։ Դրական գնահատականի է արժանի տասներորդ հնգամյակի

ների կուսակցական հանձնաժողովները։ Ընդհանուր առմամբ քիչ բան չի արվում։ Բայց, այնուամենայնիվ, կատարման ստուգումը դեռևս մնում է զգալի թվով կուսակցական կազմակերպությունների աշխատանքի նեղ տեղը։

Օրինակ, ինչպես ցույց է տվել ՍՄԿԿ Կենտկոմում մի շարք միութենական մինիստրությունների կոմունիստների աշխատանքի վերաբերյալ հարցերի քննարկումը, տնտեսական գործունեության մեջ շատ թերություններ պայմանավորված են վերահսկողության հստակ սիստեմի բացակայությամբ, ղեկավարման թղթային ոճով։

Ցավոք, մինչև օրս դեռ ոչ բոլորն են յուրացրել այն պարզ ճշմարտությունը, թե ղեկավարման արվեստը այն չէ, որ ամեն առիթով դիրեկտիվ ցուցումներ հորինեն և շռայլեն։ Ընդունելով որոշում, հարկավոր է հասնել սահմանված ժամկետում դրա անշեղ կատարմանը։ Հենց դրան պետք է օգնի վերահսկողության ուժեղացումը։ Եվ այդ վերահսկողությունը պետք է իրականացվի սիստեմատիկաբար ու օպերատիվորեն, վերևից ու ներքևից միաժամանակ։

Ղեկավարման ոճն ու մեթոդները մի այնպիսի հարց է, որը կարևոր է ողջ կուսակցության համար, ամբողջ ժողովրդի համար։ Այս բանը հիշելը, ամեն օր և ամեն ինչում լենինյան նորմերով առաջնորդվելը ամեն մի կուսակցական ղեկավարի ուղղակի պարտականությունն է։

## 2. ՆԵՐԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔԻ ՀԱՐՑԵՐ

Ընկերնե՛ր։ Սկսելով կուսակցության XXVI համագումարի նախապատրաստությունը, Կենտրոնական կոմիտեն դիմեց բոլոր կոմունիստներին, կոչ անելով **հաշվետու-ընտրական կամպանիան**, համագումարին ներկայացվելիք Կենտկոմի նախագծի քննարկումն անցկացնել ստեղծագործաբար, ինքնաքննադատաբար, առավելագույն չափով մոտենալով կյանքին, կոմունիստներին հուզող կոնկրետ հարցերին։

Կուսակցական կազմակերպությունների աշխատանքը չի կարող ինչպես հարկն է արդյունավետ լինել, եթե կուսակցության անդամները ժողովի են գալիս լոկ նրա համար, որ նստեն քանի ժամ պետք է և լսեն վաղօրոք նշանակված հռետորներին։ Կուսակցական ժողովը, ինչպես և ամեն մի կուսակցական կոմիտեի պլենում, այն վայրն է, որտեղ պետք է խորապես, լրջորեն քննարկվեն բոլոր հրատապ հարցերը։ Եվ, իհարկե, առանձնապես կարևոր էր, որ հենց այդպես ընթանար համագումարի նախապատրաստությունը։

Հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքը ցույց տվեց, որ մեր կուսակցության անդամները լսեցին Կենտրոնական կոմիտեի կոչը, պաշտպանեցին այն։ Հաշվետու-ընտրական ժողովները մեծ մասամբ անցան բարձր ակտիվության պայմաններում։ Սկզբնական, արտադրամասային կուսկազմակերպություններում և կուսակցական խմբերում այդ ժողովներին ներկա եղավ կոմունիստների 96 տոկոսը։ Մոտավորապես տասը միլիոն մարդ ելույթ ունեցավ մտքերի փոխանակության ժամանակ։

Այդ ելույթների բովանդակությունը վկայում է կոմունիստների պատասխանատվության զգացումը իրենց աշխատանքի համար, այն ամենի համար, ինչ արվում է կուսակցության ու երկրի ներսում։ Ժողովների, կոնֆերանսների ու համագումարների մասնակիցները խստապահանջությամբ էին գնահատում ընտրովի կուսակցական մարմինների գործունեությունը։ Նրանք քննադատում էին վրիպումներն ու թերությունները։ Արվեցին արժեքավոր շատ առաջարկություններ։

Հենց սա էլ, ընկերնե՛ր, կուսակցության կոլեկտիվ բանականությունն է։ (**Ծափահարություններ**)։ Հենց սա էլ կուսակցության միասնական կամքն է, Կենտրոնական կոմիտեի շուրջը կոմունիստների համախմբվածության արտահայտությունը։ (**Երկարատև ծափահարություններ**)։

Կոմունիստական կուսակցության կյանքի անշեղ նորմն է **դեմոկրատական ցենտրալիզմը**։ Իսկ այն մասնավորապես ենթադրում է կենտրոնի ու տեղերի կուսակցության ղեկավար մարմինների ու կուսակցական մասսաների սերտագույն կապը։ Ընդ որում, այդ կապը երկկողմ է։

Որպես մասսաների հետ կուսակցության կենդանի կապի միջոց՝ հսկայական նշանակություն ունեն **աշխատավորների նամակներն ու առաջարկությունները**։ Անսահմանորեն վստահելով կուսակցությանը, նրանք անկեղծորեն դիմում են նրան հասարակական կյանքի, աշխատանքի ու կենցաղի ամենահրատապ հարցերով, սրտաբացորեն արտահայտում իրենց նկատառումներն ու հոգսերը, քննադատում առկա թերությունները։ Նամակների հետ տարվող աշխատանքին, ժամանակին դրանց արձագանքելուն Կենտկոմը մեծ նշանակություն է տալիս։

Հաշվետու ժամանակաշրջանում այդ աշխատանքն էականորեն բարելավվել է, որին քիչ չի նպաստել Կենտկոմի ապարատում նամակների բաժնի ստեղծումը։

Մտորելով նամակների շուրջը, իսկ ՍՄԿԿ Կենտկոմում ամեն օր ստացվում է մոտավորապես մեկուկես հազար նամակ, ես չեմ կարող չասել հետևյալը։ Դրանցից շատերը, ցավոք, տեղերում լրջորեն թերանալու ցուցանիշ են։ Աշխատավորների առաջադրած հարցերը ամենուրեք կարող են և պետք է լուծվեն ձեռնարկությունների ղեկավարների, շրջանային ու քաղաքային կազմակերպությունների կողմից։ Քաղաքացիների խնդրանքների ու գանգատների նկատմամբ զգայուն, ուշադիր վերաբերմունքը յուրաքանչյուր կուսակցական աշխատող, յուրաքանչյուր ղեկավար պարտավոր է դիտել որպես իր պարտքը ժողովրդի հանդեպ, կուսակցության հանդեպ։ (**Ծափահարություններ**)։

Շեշտում եմ՝ անկեղծ, աղնիվ նամակների նկատմամբ։ Իսկ ինչ վերաբերում է ամեն կարգի անստորագիր զրպարտագրերին, ապա կուսակցական տեսակետը հայտնի է. դրանք չպետք է տեղ ունենան մեր կյանքում։ (**Ծափահարություններ**)։ Նրանք, ովքեր հանդես են գալիս ճշմարտացի, գործարար քննադատությամբ, հարկ չունեն թաքցնելու իրենց դեմքը։ (**Երկարատև ծափահարություններ**)։

Կուսակցության դեմոկրատական կյանքի անկապտելի տարրն է **ներկուսակցական ինֆորմացիան**։ ՍՄԿԿ Կենտկոմը տեղական կուսակցական մարմիններին, կոմունիստներին լայնորեն և օպերատիվորեն ինֆորմացիա է տվել ներքին ու արտաքին քաղաքականության, կազմակերպական ու գաղափարախոսական աշխատանքի հարցերի վերաբերյալ։ Միաժամանակ ՍՄԿԿ Կենտկոմը, բոլոր կուսակցական կոմիտեներն սկսել են ավելի ակտիվորեն օգտագործել սկզբնական կուսակցական կազմակերպությունների ինֆորմացիան։ Դա օգնում է հաշվի առնելու հասարակական կարծիքը, ավելի կոնկրետ պատկերացնելու տեղերում տիրող իրավիճակը։

Շատ կարևոր գործ է սովետական բոլոր քաղաքացիներին կուսակցության կյանքի մասին ինֆորմացիա տալը։ Կուսակցական կազմակերպությունների աշխատանքում հրապարակայնությունը մասսաների հետ կուսակցության կապերի ամրապնդման ներգործուն միջոց է։ Այս իմաստով մեզանում շատ բան է արվում, բայց որոշ բաներ, հավանաբար, կարելի է բարելավել։

ՍՄԿԿ XXV համագումարի ցուցումները խթանեցին **քննադատության ու ինքնաքննադատության** հետագա ծավալումը կուսակցության մեջ։ Հարկավոր է այսուհետ ևս ըստ ամենայնի խորացնել այդ դրական միտումը, կուսակցական բոլոր կազմակերպություններում հաստատել ինքնաքննադատության ոգին, թերությունների նկատմամբ անհաշտվողականության ոգին։

Քննադատության համար հետապնդելու ամեն տեսակ փորձերին պետք է ամենավճռական հակահարված տրվի։ Այս հարցում դիրքավորումը հստակորեն վավերագրված է կուսակցության կանոնադրության մեջ։ Այդ դիրքավորումն իր արտացոլումն է գտել նաև ՍՍՀՄ սահմանադրության մեջ։ Ո՛չ մի թողտվություն քննադատությունը ճնշողների նկատմամբ, այսպիսին է թե՛ կուսակցական և թե պետական օրենքի պահանջը։ (**Ծափահարություններ**)։

ուցման, առաջին հերթին՝ կոմունիստների ուսուցման որակի բարելավմանը։ Եվ այս խնդիրն անկարելի է լուծել առանց մեր պրոպագանդիստական կադրերի ընտրության, պատրաստության և նրանց ժամանակին ինֆորմացիա տալու նկատմամբ ավելի հիմնավոր մոտեցման։

Չէ՞ որ պրոպագանդիստը գլխավոր դեմքն է կուսակցական ուսուցման սիստեմում։ Հենց նրանով է մեծապես պայմանավորված, թե ինչպիսին կլինեն սեմինարները, քաղդպրոցները, համալսարանները. թե արդյոք դրանք կլինե՞ն այնպիսի վայր, որտեղ երբեմն իշխում է ձանձրույթը, որտեղ միայն «սպանում են» սահմանված ժամերը, թե՞, ընդհակառակը, դրանք ամենուրեք կդառնան կուսակցական կենդանի մտքի ու խոսքի իսկական կենտրոններ։ Կուսակցության գաղափարախոսական, պրոպագանդիստական ակտիվով է առաջին հերթին պայմանավորված մարդկանց վերաբերմունքը կուսակցական ուսուցման նկատմամբ։ Մարդիկ պետք է իրենք ձգտեն դրան, որպեսզի կոլեկտիվ կերպով քննարկեն կուսակցության տեսության ու քաղաքականության հրատապ պրոբլեմները, ստանան ամենքին հուզող հարցերի պատասխանները, լրացնեն իրենց գաղափարատեսական գիտելիքները։

Կուսակցության գաղափարախոսական, պրոպագանդիստական ակտիվին առաջնահերթ դեր է պատկանում մասսաների մարքս-լենինյան կրթության և դաստիարակության, կոմունիստական շինարարության խնդիրների լուծմանն ուղղված նրանց ստեղծագործական ակտիվության հետագա զարգացման գործում։

Ընկերնե՛ր։ Մարքս-լենինյան կուսակցությունը չի կարող իր դերը կատարել, եթե պատշաճ ուշադրություն չի նվիրում ողջ կատարվածի իմաստավորմանը, կյանքի նոր երևույթների ընդհանրացմանը, մարքս–լենինյան տեսության ստեղծագործական զարգացմանը։ Մենք այս խնդիրը միշտ էլ համարել ենք հույժ կարևոր, դրա լուծմանը մեծ ուշադրություն ենք նվիրել նաև հաշվետու ժամանակաշրջանում։

XXV համագումարից հետո կուսակցության տեսական զինանոցը համալրվել է մի շարք կարևոր ընդհանրացումներով ու հետևություններով։

Այն բանից, ինչ արված է տեսության բնագավառում, նախ և առաջ հարկ է հիշատակել զարգացած սոցիալիզմի կոնցեպցիայի մշակումը։ Հենվելով այդ կոնցեպցիայի վրա, կուսակցությունը ճշգրտել և կոնկրետացրել է մեր ծրագրային նպատակների իրականացման ուղիներն ու ժամկետները, սահմանել տվյալ պատմական ժամանակաշրջանի ստրատեգիան ու տակտիկան։

Վերջին տարիների կուսակցական փաստաթղթերում և գիտական հետազոտություններում բացահայտվում են հասուն սոցիալիզմի տարբեր կողմերը։ Ստեղծվել են այնպիսի աշխատություններ, որոնք վերլուծում են համաշխարհային սոցիալիզմի փորձը, բացահայտում համաշխարհային հեղափոխական պրոցեսի օրինաչափությունները։ Կան միջազգային բանվորական շարժման պատմությանը, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ժամանակակից փուլի և պետական մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացման պատմությանը վերաբերող բավականին լավ հետազոտություններ։ Լուրջ քայլեր են արվել ժամանակակից միջազգային հարաբերությունների ուսումնասիրման ասպարեզում։

Մի խոսքով, մեծ աշխատանք է տարվել, և այդ աշխատանքը արժանի է ճանաչման։ Սակայն հասարակական գիտությունների բնագավառում բնավ ամեն ինչ չէ, որ գոհունակություն է հարուցում։ Տակավին հաղթահարված չէ սխոլաստիկ տեսականացման մարմաջը, որի մասին խոսվեց նաև XXV համագումարում։ Փիլիսոփաները հաճախ գերադասում են ապացուցել ապացուցվածը, փոխանակ իմաստավորելու կյանքի նոր երևույթները։ Իրենց լուծման սպասող շատ պրոբլեմներ են կուտակվել սոցիալիզմի քաղաքատնտեսության բնագավառում։ Ավելի շատ ուշադրություն են պահանջում գիտատեխնիկական հեղաշրջման սոցիալական հետևանքները։ Հարկավոր է ավելի խոր և համարձակորեն վերլուծել հասարակության քաղաքական կյանքի երևույթները։ Տակավին թույլ է ուսումնասիրվում հասարակական կարծիքը։

Եվ սա այն հարցերի լոկ մի մասն է, որոնցով պետք է զբաղվել։

Ընկերնե՛ր։ Կենտրոնական կոմիտեն անհրաժեշտ է համարում համագումարի քննարկմանը դնել համակուսակցական նշանակություն ունեցող ևս մի խոշոր հարց։

Հաշվետու ժամանակաշրջանում երկրում բոլոր վերափոխումները, համաշխարհային ասպարեզում մեր բոլոր քայլերն իրականացվել են կուսակցության ծրագրային ղեկավար ցուցումներին համապատասխան։ ՍՄԿԿ-ի ներկայումս գործող ծրագիրն ամբողջությամբ վերցված ճիշտ է արտացոլում հասարակական զարգացման օրինաչափությունները։ Սակայն դրա ընդունման պահից անցել է 20 տարի։

Այդ ժամանակամիջոցում կուտակվել է ՍՍՀՄ-ում սոցիալիստական և կոմունիստական ստեղծարար աշխատանքի մեծ փորձ։ Այդ փորձն անհերքելիորեն վկայում է, որ դեպի կոմունիզմ մեր առաջընթացը տեղի է ունենում զարգացած սոցիալիստական հասարակության փուլի միջով։ Դա, ինչպես արդեն նշվել է, անհրաժեշտ, օրինաչափ և պատմականորեն տևական ժամանակաշրջանն է կոմունիստական ֆորմացիայի կազմավորման մեջ։ Այդպիսի հետևողություն կուսակցությունն արել և մշակել է վերջին տարիներին, և դա, անտարակույս, հարկավոր է պատշաճ ձևով արտացոլել կուսակցության ծրագրում։

Ըստ երևույթին ծրագրի մեջ պետք է պարզորոշ բացահայտել մեր էկոնոմիկայի կառուցվածքում կատարված փոփոխությունները, ընդգծել և ճշգրտել տվյալ ժամանակի համար նախատեսված խնդիրները։

Անշուշտ, մենք պետք է ելնենք լենինյան այն ցուցումից, որ ծրագիրը սահմանում է լոկ հիմնական սկզբունքները, դրանում անհնար է և տեղին չէ կանխագուշակել մանրամասնությունները։

Միջազգային ասպարեզում նույնպես դրսևորվել են բազմաթիվ նոր, սկզբունքորեն կարևոր երևույթներ ու պրոցեսներ։

Սոցիալիստական աշխարհում դրանք են՝ եղբայրական երկրների անշեղ մերձեցումը, տնտեսական ինտեգրացիայի զարգացումը։ Ըստ երևույթին պետք է դասեր առնվեն նաև այն դժվարություններից, որ հանդիպում են սոցիալիստական երկրների զարգացման ճանապարհին։

Կուսակցության ծրագրում արժե արտացոլել նաև միջազգային կյանքի այնպիսի սկզբունքորեն կարևոր երևույթներ, ինչպիսիք են իմպերիալիզմի գաղութային սիստեմի վերացումը, համաշխարհային ասպարեզում տասնյակ երիտասարդ պետությունների աճած քաղաքական դերը, որոնցից շատերն իրենց առջև նպատակ են դնում զարգանալու սոցիալիզմի ուղղությամբ։ Ինչ խոսք, պահանջվում է իմաստավորել կապիտալիզմի աշխարհի որոշ նոր երևույթներ, մասնավորապես կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի այժմյան փուլի առանձնահատկությունը, ռազմաարդյունաբերական կոմպլեքսի, վերազգային կորպորացիաների դերի խիստ մեծացումը։

Մեր կուսակցությունը կուտակել է խաղաղության համար, միջազգային լարվածության թուլացման համար մղվող պայքարի հսկայական փորձ։ Դրա շնորհիվ հարստացել են խաղաղ գոյակցության թե՛ տեսությունը և թե պրակտիկան։

Հաշվի առնելով ամբողջ ասվածը, մենք, ըստ երևույթին, պետք է անհրաժեշտ փոփոխություններ ու լրացումներ մտցնենք գործող ծրագրի մեջ։ Եթե այս առաջարկությունն արժանանա համագումարի պատգամավորների պաշտպանությանը, ապա կարելի կլինի Կենտրոնական կոմիտեին հանձնարարել նախապատրաստել ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունը։ (Երկարատև ծափահարություններ)։

***

Ընկերնե՛ր։ Սրընթաց է ժամանակի հոսքը։ Այս համագումարում մենք պետք է քննարկենք կուսակցության պլանները, երկրի տասնմեկերորդ հնգամյակի պլանները և նայենք ավելի հեռուն՝ մինչև 1990 թվականը։ Փաստորեն այն բանով, թե մենք այս օրերին ինչ կորոշենք, մեծապես պայմանավորված կլինի մեր հայրենիքի դեմքը 20-րդ դարի վերջին, երրորդ հազարամյակի շեմին։

Քսաներորդ դարն իր հետ բերեց ավելի մեծ վերափոխումներ, քան նրան

նախորդած որևէ այլ հարյուրամյակ։ Եվ ոչ մի երկիր այդ վերափոխումների մեջ չի ներդրել ավելի ծանրակշիռ ավանդ, քան Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը՝ մեծ Հոկտեմբերի հայրենիքը, հաղթական սոցիալիզմի առաջին երկիրը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։ Ահա արդեն յոթերորդ տասնամյակն է, ինչ նրան հովանի է անպարտելի լենինյան դրոշը։ (Երկարատև ծափահարություններ)։

Չկա այնպիսի երկիր կամ երկրների խումբ, այնպիսի գաղափարական կամ քաղաքական հոսանք, որն այս կամ այն չափով չկրեր սոցիալիզմի ազդեցությունը։ Այսպիսին է քսաներորդ դարի վերջի իրողությունը։

Դյուրությամբ չի ծնվում նոր կյանքը։ Դժվարին, երբեմն տանջալից է սոցիալական առաջընթացի ուղին։ Բայց դրա շնորհիվ իսկ առավել նշանակալից, առավել ցայտուն են սոցիալիստական հասարակության նվաճումները, առավել վեհասքանչ են այն կառուցողների ու պաշտպանողների սխրանքները։

Մեր կոմունիստական կուսակցությանը, մեզ՝ սովետական կոմունիստներիս, վիճակվել է նախանձելի դեր՝ լինել կյանքի սոցիալիստական վերափոխման ակունքների մոտ։ Մեզ վիճակվել է խաղաղությունը պաշտպանելու պատվավոր առաքելությունը։ (Երկարատև ծափահարություններ)։

Հեռաքանչ է մեր նպատակը՝ կոմունիզմը։ Եվ յուրաքանչյուր աշխատանքային հաջողություն, հերոսական մեծագործությունների յուրաքանչյուր տարի, յուրաքանչյուր հնգամյակ մեզ մոտեցնում են այդ նպատակին։ Այս տեսակետից է կուսակցությունը գնահատում նաև առաջիկա հնգամյակը։ Անելիքներ շատ կան։ Հարկավոր է լուծել մեծ, բարդ խնդիրներ։ Բայց մենք կլուծենք դրանք և կլուծենք անպայման։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Այո՛, սովետական մարդիկ վստահությամբ են նայում վաղվա օրվան, սակայն նրանց լավատեսությունը բախտի սիրեցյալների ինքնավստահություն չէ։ Մեր ժողովուրդը գիտե. այն ամենը, ինչ ինքն ունի, ստեղծված է իր սեփական աշխատանքով, պաշտպանվել է իր սեփական արյամբ։ Եվ մենք լավատեսներ ենք, որովհետև հավատում ենք աշխատանքի ուժին, որովհետև հավատում ենք մեր երկրին, մեր ժողովրդին։ Մենք լավատեսներ ենք, որովհետև հավատում ենք մեր կուսակցությանը, գիտենք, որ նրա մատնանշած ուղին միակ ճշմարիտ ուղին է։ (Երկարատև ծափահարություններ)։

Փա՜ռք ու պատիվ Սովետական Միության կոմունիստական կուսակցությանը՝ կոմունիզմ կառուցողների կուսակցությանը։ (Երկարատև ծափահարություններ)։

Թող է՛լ ավելի ամրապնդվի ու բարգավաճի մեր մեծ հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը։ (Երկարատև ծափահարություններ)։

Կեցցե՜ խաղաղությունը։ (Երկարատև ծափահարություններ)։

Կեցցե՜ կոմունիզմը։ (Դահլիճում ներկա գտնվողները ընկեր Լ. Ի. Բրեժնևի եզրափակիչ խոսքերն ընդունում են բուռն, երկարատև օվացիայով։ Բոլորը ոտքի են կանգնում։ Համագումարի պալատի կամարների տակ հնչում են բացականչություններ. «Փա՜ռք Սովետական Միության կոմունիստական կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեին», «Կեցցե՜ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը», «Փա՜ռք սովետական մեծ ժողովրդին», «Կեցցե՜ ՍՄԿԿ-ի և սովետական ժողովրդի անխախտ միասնությունը»)։

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՓԱԿՄԱՆ ԺԱՄԱՆԱԿ

Ընկերնե՛ր։ Հենց նոր ավարտվեց համագումարի ընտրած մեր կուսակցու-
թյան Կենտրոնական կոմիտեի նոր կազմի առաջին պլենումը։ Թույլ տվեք զե-
կուցել նրա արդյունքների մասին։ Կենտկոմի առաջին պլենումում, որն անցավ
բացարձակ միասնության և համախմբվածության մթնոլորտում, միաձայն ըն-
տրվեցին մեր կուսակցության ղեկավար մարմինները։ Պլենումը միաձայն
ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընտրեց ընկեր Լ. Ի. Բրեժնևին (Բուռն,
երկարատև ծափահարություններ, բոլորը ոտքի են կանգնում)։

Թույլ տվեք, ընկեր պատգամավորներ, շնորհակալության անկեղծ խոսքեր
ասել այն պատվի և մեծ վստահության համար, որ դուք ցուցաբերեցիք ինձ՝
վերստին ընտրելով Սովետական Միության կոմունիստական կուսակցության
Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար։ (Երկարատև ծափահարություն-
ներ)։

Պլենումում միաձայն Կենտկոմի քաղբյուրոյի անդամներ են ընտրվել ըն-
կերներ՝ Լ. Ի. Բրեժնևը (ծափահարություններ), Յու. Վ. Անդրոպովը (ծափահա-
րություններ), Մ. Ս. Գորբաչովը (ծափահարություններ), Վ. Վ. Գրիշինը (ծա-
փահարություններ), Ա. Ա. Գրոմիկոն (ծափահարություններ), Ա. Պ. Կիրիլեն-
կոն (ծափահարություններ), Դ. Ա. Կունաևը (ծափահարություններ), Վ. Վ.
Շչերբիցկին (ծափահարություններ), Կ. Ու. Չեռնենկոն (ծափահարություններ),
Ա. Յա. Պելշեն (ծափահարություններ), Գ. Վ. Ռոմանովը (ծափահարություն-
ներ), Մ. Ա. Սուսլովը (ծափահարություններ), Ն. Ա. Տիխոնովը (ծափահարու-
թյուններ), Դ. Ֆ. Ուստինովը (ծափահարություններ)։

Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածուներ են ընտրվել ընկերներ՝
Հ. Ա. Ալիևը (ծափահարություններ), Պ. Ն. Դեմիչևը (ծափահարություններ),
Տ. Յա. Կիսելյովը (ծափահարություններ), Վ. Վ. Կուզնեցովը (ծափահարու-
թյուններ), Բ. Ն. Պոնոմարյովը (ծափահարություններ), Շ. Ռ. Ռաշիդովը (ծա-
փահարություններ), Մ. Ս. Սոլոմենցևը (ծափահարություններ), Է. Ա. Շե-
վարդնաձեն (ծափահարություններ)։

Կենտկոմի քարտուղարներ են ընտրվել ընկերներ՝ Լ. Ի. Բրեժնևը՝ Կենտկո-
մի գլխավոր քարտուղար (ծափահարություններ), Մ. Ա. Սուսլովը (ծափահա-
րություններ), Ա. Պ. Կիրիլենկոն (ծափահարություններ), Կ. Ու. Չեռնենկոն
(ծափահարություններ), Մ.Ս. Գորբաչովը (ծափահարություններ), Բ. Ն. Պո-
նոմարյովը (ծափահարություններ), Ի. Վ. Կապիտոնովը (ծափահարություն-
ներ), Վ. Ի. Դոլգիխը (ծափահարություններ), Մ. Վ. Զիմյանինը (ծափահա-
րություններ), Կ. Վ. Ռուսակովը (ծափահարություններ)։

ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեի
նախագահ է հաստատվել ընկեր Ա. Յա. Պելշեն (ծափահարություններ)։

ՍՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի նախագահ է ընտրվել
ընկեր Կ. Ֆ. Սիզովը (ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի նորընտիր անդամները, Կենտ-
կոմի անդամության թեկնածուները, Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողո-
վի անդամներն ինձ հանձնարարել են համագումարի պատգամավորներին սրտագին
շնորհակալություն հայտնել մեզ ցույց տրված մեծ վստահության հա-
մար։ (Ծափահարություններ)։

Մենք բարձր ենք գնահատում այդ վստահությունը, լավ ենք հասկանում

թյան փորձված ինտերնացիոնալիստական կուրսով։ (Երկարատև ծափահարություններ)։

Արտասահմանցի ընկերների բոլոր ելույթներում այն միտքն էր շեշտվում, որ անհրաժեշտ է միասնություն հանուն խաղաղության և մարդկության պրոգրեսի։ Մեր դարաշրջանում այդ երկու հասկացությունները անխզելիորեն շաղկապված են։ Խաղաղությունը մարդկային գործունեության ամեն մի ոլորտում պրոգրեսի վճռական նախադրյալն է։ Եվ մենք համոզված ենք՝ եթե կոմունիստները, հեղափոխականները, առողջ ու ողջախոհ ուժերը լիովին գիտակցեն իրենց պատասխանատվությունը և հանդես գան միասնական ճակատով, ապա խաղաղության հակառակորդների պլանները անպայման կվիժեցվեն։ (Ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Այն ժամանակվանից, երբ մեծ Լենինը հիմնեց մեր կուսակցությունը, այն վստահորեն ընթանում է սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման Լենինի նշած ուղիով։ (Ծափահարություններ)։

Այդ ժամանակահատվածում քանի՜-քանի անգամ կանխագուշակել են մեր անխուսափելի ձախողումը։ Քանի՜-քանի անգամ փորձել են մեզ ստիպել հրաժարվել նախատեսված նպատակներից։ Քանի՜-քանի անգամ մեր հակառակորդները փորձել են մեզ հավատացնել, թե մենք սխալվում ենք, թե մեր ուղին սխալ է...

Եվ ի՞նչ։ Այդ մարդկանց մեծ մասին վաղուց արդեն մոռացել են։ Իսկ սոցիալիզմը կենդանի է։ (Ծափահարություններ)։ Այն զարգանում է։ Այն անշեղորեն առաջ է ընթանում։ Եվ մենք ո՛չ թե պարզապես հավատում ենք, այլ հաստատ գիտենք՝ կիրագործվի նաև մեր բարձրագույն նպատակը՝ կոմունիստական հասարակությունը կկառուցվի։ (Երկարատև ծափահարություններ)։

Մենք դրանում համոզված ենք, որովհետև հավատում ենք մեր իդեալների սուրբ ճշմարտությանը։ Մենք դրանում համոզված ենք, որովհետև գիտակցում ենք մեր ժողովրդի անսպառ հզորությունը։ Մենք դրանում համոզված ենք, որովհետև գիտենք. մեր կուսակցության մարքս-լենինյան կուրսը հուսալի կուրս է։ (Երկարատև ծափահարություններ)։

Ուրեմն համարձակ առաջ ընթանանք դեպի կոմունիզմ տանող ուղիով։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Թո՛ղ այսուհետ ևս ամրապնդվի կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի անխախտ միասնությունը։ (Բուռն ծափահարություններ)։

Թո՛ղ այսուհետ ևս ամրապնդվի սոցիալիստական ընկերակության, մեր մոլորակի բոլոր հեղափոխական ուժերի միասնությունը։ (Բուռն ծափահարություններ)։

Փա՜ռք մեր լենինյան կուսակցությանը։ (Բուռն ծափահարություններ)։

Կեցցե՜ սովետական մեծ ժողովուրդը։ (Բուռն ծափահարություններ)։

Կեցցե՜ խաղաղությունը։ (Բուռն ծափահարություններ)։

Կեցցե՜ կոմունիզմը։ (Դահլիճի կամարների ներքո չի լռում օվացիան: Բոլորը ոտքի են կանգնում: Հնչում են բացականչություններ՝ «Կեցցե՜ ՍՄԿԿ-ն», «Փա՜ռք լենինյան Կենտրոնական կոմիտեին», «Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին՝ ուռա՜», «Կեցցե՜ կուսակցության և ժողովրդի անխախտ միասնությունը», «Փա՜ռք: Փա՜ռք»: «Ուռա՜»)։



# ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՍԱՀՄԱՆՆԵՐԻ ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ԸՄԲՌՆՈՒՄԸ

**Ի. Ս. ԲԱԼՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների
թեկնածու, դոցենտ

Գիտական գրականության մեջ առկա է «պրոլետարիատ» հասկացության երկու բացատրություն, «պրոլետարիատ», որպես «բանվոր դասակարգ» և «պրոլետարիատ», ընդհանրապես։

«Վարձու բանվորների դասակարգը,— գրում է Կ. Մարքսը,— որը գոյավորվեց XIV դարի երկրորդ կեսում, այն ժամանակ և հաջորդ դարում կազմում էր ժողովրդի մի չնչին մասը...» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, Հայպետհրատ, 1954 թ., էջ 770)։

Նշված ժամանակաշրջանում, երբ վարձու աշխատողների այլ ջոկատներ դեռևս չկային, գիտական կոմունիզմի հիմնադիրները պրոլետարիատի մասին խոսելիս հիմնականում նկատի ունեին բանվոր դասակարգին։ «Ես,— գրել է Ֆ. Էնգելսը,— որպես համանշանակ արտահայտություններ, մշտապես օգտագործում եմ բանվորներ և պրոլետարներ, բանվոր դասակարգ, չունևոր դասակարգ և պրոլետարիատ» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 2, стр. 240)։ Աշխատանքային ընդհանուր բանակի մեջ Մարքսն առանձնացնում էր բանվոր դասակարգին, որն այն ժամանակ համապատասխանում էր «ֆաբրիկագործարանային բանվորներ» հասկացությանը։ Վ. Ի. Լենինը, զարգացնելով Մարքսի և Էնգելսի գաղափարները, խոսում էր բանվոր դասակարգի մասին՝ որպես պրոլետարիատի ամբողջ բանակի կամ նրա առաջավոր, ավելի կազմակերպված ջոկատի՝ «արդյունաբերական բանվորների»։ Նա հաճախ ամբողջ բնակչության կազմից առանձնացնում էր պրոլետարիատին, նրան տալով «բանվոր-պրոլետարիատ» անվանումը։ Մարքսիզմ-լենինիզմի դասականները, օգտագործելով այդ տերմինները, շեշտել են միևնույն դասակարգի տարբեր առանձնահատկությունները։ Նրանք ցույց են տվել, որ պրոլետարիատը ներառում է բոլոր չունևորներին, արտադրամիջոցներից զրկվածներին, որոնց համար աշխատուժի վաճառումը գոյության միակ միջոցն էր։ Կոմունիստական կուսակցության մանիֆեստում Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը գրել են. «Պրոլետարիատ ասելով հասկացվում է ժամանակակից վարձու բանվորների դասակարգը, որոնք զրկված լինելով արտադրության իրենց սեփական միջոցներից՝ ապրելու համար հարկադրված են վաճառել իրենց աշխատանքային ուժը» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, «Հայաստան» հրատ., 1972, էջ 138)։ Այնուհետև հիմնավոր վերլուծելով կապիտալիզմի տնտեսական մեխանիզմը, Կ. Մարքսը Կապիտալում նշել է. ««Պրոլետար» ասելով, տնտեսագիտական իմաստով պետք է ի նկատի առնել բացառապես վարձու բանվորին, որը «կապիտալ» է արտադրում, մեծացնում է նրա արժեքը և փողոց է շպրտվում, հենց որ ավելորդ է դառնում «պարոն կապիտալի»... ինքնաճման պահանջների հա-

## Կենսագործենք ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները

# ՏՆՏԵՍԱՎԱՐԵԼ ԽՆԱՅՈՂԱԲԱՐ

**Ս. Գ. ՀՈՎՍԵՓՅԱՆ**

*ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ նվաճումները սովետական ժողովրդի ամենօրյա ստեղծագործական ջանքերի արգասիքն են։ ՍՄԿԿ XXVI համագումարը շեշտեց, որ նյութական և հոգևոր բարիքները ստեղծվում են բանվորների, կոլտնտեսականների ու մտավորականության անդուլ աշխատանքով։ Միայն աշխատանքն է ազգային հարստության բազմապատկման աղբյուրը։ Հասարակությունը կարող է բաշխել լոկ այն, ինչ արտադրված է, ուստի՝ որքան շատ են աշխատանքի արդյունքները, այնքան ավելի է ամրապնդվում մեր հայրենիքի հզորությունը, առավել լրիվ են բավարարվում սովետական մարդկանց պահանջմունքները, ավելի բարձր է նրանց կենսամակարդակը։*

*ՍՄԿԿ XXVI համագումարը տասնմեկերորդ հնգամյակի գլխավոր խնդիրը սահմանեց սովետական մարդկանց բարեկեցության հետագա բարձրացումը, որը պետք է ձեռք բերվի ժողովրդական տնտեսության հաստատուն, համաչափ զարգացմամբ, գիտատեխնիկական առաջընթացի արագացմամբ և էկոնոմիկան ինտենսիվ ուղու վրա փոխադրելով, երկրի արտադրական պոտենցիալի առավել ռացիոնալ օգտագործմամբ, ռեսուրսների բոլոր տեսակների խնայողությամբ և աշխատանքի որակի բարելավմամբ։ Ուստի, նոր հնգամյակի գլխավոր խնդրի լուծման հիմնական միջոցներից մեկը բնական ռեսուրսների և աշխատանքի պրոցեսում ստեղծվող նյութական արժեքների տնտեսումն է։*

*Դեռևս սովետական իշխանության հաստատման արշալույսին Վ. Ի. Լենինը կոչ արեց աչքի լույսի պես պահպանել ժողովրդական ունեցվածքը՝ հողը, նրա ընդերքը, հացը, ֆաբրիկաները, գործիքները, մթերքները, տրանսպորտը։ Հիրավի, հասարակական սեփականությունը պահանջում է սրտացավ, խնայողական վերաբերմունք ժողովրդական բարիքի նկատմամբ։ Սոցիալիստական հասարակությունն ընձեռում է խնայողաբար տնտեսավարելու օբյեկտիվ հնարավորություններ, բացառում մարդու շահագործումը մարդու կողմից, ներդաշնակորեն զուգակցում հանրային, կոլեկտիվ և անհատական շահերը։*

*Խնայողության ռեժիմի իրականացումը հնարավոր դարձրեց տնտեսելու հասարակական աշխատանքը, կանխելու անօգտակար ծախսումները, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը։ «Կոմունիզմն սկսվում է այնտեղ,— նկատել է Լենինը,— որտեղ երևան է գալիս շարքային բանվորների անձնվեր, ծանր աշխատանքը հաղթահարող հոգսը՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, պահպանելու* յուրաքանչյուր փութ հացը, ածուխը, երկաթը և այլ մթերքներ» *(*Երկեր, *հ. 29, էջ 524)։*

*Նյութական ռեսուրսների խնայողությունը մեծապես խթանում է հանրային աշխատանքի արտադրողականության աճը։ Աշխատողների միջին արտադրանքն ավելացնելու դեպքում խնայվում է տվյալ տեղամասի, ձեռնարկության կամ ճյուղի աշխատողների կենդանի աշխատանքը։ Նյութատարության նվազեցումով խնայվում է մարած աշխատանքը՝ սոցիալիստական տնտեսության մյուս տեղամասերի աշխատողների երեկվա աշխատանքը։*



Խնայել՝ *ամենից առաջ նշանակում է խելացի օգտագործել ռեսուրսները, կանխել կորուստները։ Խնայողության ռեժիմը չի կարելի հանգեցնել սոսկ տընտեսման։ Կարևոր է ոչ միայն պահպանել ռեսուրսները, այլև դրանք ռացիոնալ օգտագործել, ստանալ առավելագույն փոխհատուցում։ Վ. Ի. Լենինը հանդիմանում էր այն տնտեսավարներին, որոնք չէին մտահոգվում իրենց տնօրինությանը հանձնված կոպեկը խնայելու և այն երկու կոպեկ դարձնելու մասին (տե՛ս* Երկեր, *հ. 33, էջ 264)։*

*«Սովորել տնտեսավարել» լենինյան կոչը զարգացած սոցիալիզմի պայմաններում հարստանում է նոր բովանդակությամբ։ Այդ դարձել է սոցիալիստական տնտեսավարման կարևոր լծակներից մեկը։ Խնայողության ռեժիմը տեխնիկական, տնտեսական, կազմակերպական և դաստիարակչական միջոցառումների պլանաչափորեն իրականացվող համակարգ է։*

*Հումքի և նյութի մեծ խնայողություն է տալիս արտադրանքի որակի բարձրացումը։ Իզուր չի ասված, թե՝ արտադրել որակով, դա համարյա միշտ նշանակում է արտադրել նաև ավելի շատ, ավելի խնայողաբար։ Արտադրության մասշտաբների աճի հետ մեկտեղ բարձրանում են նաև այն պահանջները, որ հասարակությունն ունի արտադրանքի որակի նկատմամբ։ Որակի բարելավման շնորհիվ խնայվում են զգալի միջոցներ։ Այդ խնդիրն առավել հրատապություն է ստանում էկոնոմիկայի ինտենսիվ աճի պայմաններում։ Եվ միանգամայն օրինաչափ է, որ մեր հանրապետության կուսակցական, սովետական, տնտեսական մարմինները, աշխատավորական կոլեկտիվները տասներորդ հնգամյակի տարիներին լուրջ ջանքեր գործադրեցին որակի բարելավման պրոբլեմները լուծելու նպատակով։*

*Աշխատավորական կոլեկտիվներին, կառավարման ու պլանավորման բոլոր օղակներին արդյունաբերական արտադրանքի որակի բարձրացմանը նպատակամղելու ասպարեզում Հայաստանի կուսակցական կազմակերպությունների գործունեությունը ՍՄԿԿ XXVI համագումարում արժանացավ ընկեր Լ. Ի. Բրեժնևի բարձր գնահատականին։*

*Որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի ծավալը հանրապետությունում աճեց չորս անգամ։ Այժմ պետական որականիշ ունեն 2600 արտադրատեսակներ, որոնց տեսակարար կշիռը արտադրության ընդհանուր ծավալում հասնում է 18,3 տոկոսի։*

*Կիրովականի ավտոգենային մեքենաշինության և Երևանի ավտոդողերի գործարանների, «Հայէլեկտրասարքավորում», «Հայէլեկտրաշարժիչ», «Հայէլեկտրալույս» արտադրամիավորումների կոլեկտիվները որականիշով արտադրանքի ծավալը հասցրել են 60—78 տոկոսի։ Արդեն որականիշով արտադրանք են թողարկում Սովետական Հայաստանի շուրջ 230 ձեռնարկություններ։ Ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշել է, որ լավորակ, խղճի մտոք պատրաստված առարկաները՝ լինեն դրանք հաստոց թե տրակտոր, ավտոմոբիլ թե հեռուստացույց, տնտեսում են հասարակական ծախսումները, թեթևացնում են մեր աշխատանքը և միևնույն ժամանակ բարձրացնում են մարդու տրամադրությունը, նրա բանվորական հպարտությունը։*

*Ակներև են հանրապետության թեթև արդյունաբերության շատ ձեռնարկությունների կոլեկտիվների հաջողությունները։ Մինիստրության սիստեմում անցած հնգամյակի տարիներին պետական որականիշով արտադրանքը տասնապատիկ աճեց և արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ հասավ 24,4 տոկոսի։ Արտադրական լավ ցուցանիշների և բարձրորակ աշխատանքի համար «Մասիս» կոշիկի արտադրամիավորման կոլեկտիվը կրկին համամիութենական սոցիալիստական մրցության հաղթողների շարքում է։ Որակի բարձրացման ասպարեզում լուրջ հաջողությունների է հասել «Գառնի» կարի արտադրամիավորումը։ Այստեղ արտադրանքի ընդհանուր ծավալում որականիշով արտադրատեսակների բաժինը հասնում է 69 տոկոսի։*

*Լայն սպառման ապրանքների որակի բարելավումը ուղղակիորեն առնչվում է մեր ժողովրդի բարեկեցության բարձրացման հետ։ Այն հնարավորություն է ընձեռում առավել լրիվ և բազմակողմանիորեն բավարարելու սովետական մարդկանց հարաճուն պահանջմունքները։ Բարձրորակ, գեղեցիկ ձևավոր-*

այնպիսի կարևոր բնագավառի վրա, ինչպիսին է արտադրանքի նյութատարության նվազեցումը։ Այդ կապակցությամբ խնդիր դրվեց ստեղծել և արտադրության մեջ ներդնել նվազ նյութատար նոր կոնստրուկցիաներ, մեքենաներ ու մեխանիզմներ, արդյունավետ նյութեր, մետաղի և էներգիայի խնայողություն ապահովող տեխնոլոգիաներ։

Արդյունահանող ճյուղերի արտադրանքի մեկ միավորի վրա կենդանի աշխատանք և կապիտալ ներդրումներ ավելի շատ են ծախսվում, քան վերամշակող արդյունաբերության մեջ։ Միանգամայն ճշմարիտ է Լ. Ի. Բրեժնևի արտահայտած այն միտքը, որ «ժողովրդական տնտեսության շահերի տեսակետից, վերամշակող արդյունաբերության մեջ արտադրության կատարելագործման հաշվին հումքի խնայողության հասնելը անհամեմատ ավելի ձեռնտու է, քան նույն քանակությամբ հումքի լրացուցիչ արտադրությունը»։

Արդյունաբերության շատ ճյուղերում, հատկապես մեքենաշինության մեջ նյութատարության նվազեցման հիմնական միջոցը արտադրանքի կշռի պակասեցումն է։ Առարկայի մեծ կշիռը բնավ էլ չի վկայում դրա տեխնիկական բարձր հատկությունների մասին։ Ընդհակառակն, որպես կանոն, տեխնիկապես պրոգրեսիվ են համարվում թեթև իրերը։ Նվազեցնելու համար մեքենայի կշիռը՝ պահպանելով կամ նույնիսկ բարելավելով նրա տեխնիկական տվյալները, անհրաժեշտ է բարձրացնել կոնստրուկտորական լուծումների արդյունավետությունը, ինչպես նաև արտադրության ընդհանուր տեխնիկական մակարդակը։

Որքան քիչ նյութեր օգտագործվեն մեկ միավոր արտադրանքի թողարկման համար, որքան քիչ էներգիա և վառելիք ծախսեն մեքենաները, հաստոցները և սարքավորումները, այնքան բարձր կլինի արտադրության արդյունավետությունը, ավելի շատ բարիքներ կստեղծվեն ժողովրդի համար։ Հիշենք, որ թողարկվող արտադրանքի նյութատարության միայն մեկ տոկոս պակասեցումը համազոր է ազգային եկամուտի 4—5 միլիարդ ռուբլով լրացուցիչ ավելացմանը։

Չնայած երկրում մետաղի արտադրության նշանակալից աճին, տակավին լիովին չեն բավարարվում ժողովրդական տնտեսության պահանջները։ Հետևաբար, մետաղի խնայողությունը կենսական անհրաժեշտություն է։ Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի բանվոր Զ. Սարգսյանը ՀԿԿ XXVII համագումարում պատմեց մետաղների խնայողության խոշոր ռեզերվի՝ փոշեմետալուրգիայի արտադրության զարգացման նպատակով իրենց ձեռնարկությունում իրականացվող միջոցառումների մասին։ Ձեռնարկությունում, գիտահետազոտական հաստատությունների համագործակցությամբ, գործնական աշխատանքներ են իրականացվում պղնձի և համաձուլվածքների փոշիների արտադրության յուրացման նպատակով։ Արդեն առկա արդյունքները հիմք են տալիս առաջիկա տարիներին պղնձի փոշիների ստացման փորձնական եղանակից անցնելու դրա արդյունաբերական արտադրությանը։

Այնուամենայնիվ, մեքենաշինության մեջ երկար տարիներ է, ինչ չեն պակասում մետաղի թափոնները։ Բացառություն չեն կազմում նաև մեր հանրապետության մեքենաշինական առաջատար ձեռնարկությունները։ Թափոնը կազմում է մետաղի օգտագործված քանակության 28 տոկոսը։ Ամեն տարի միլիոնավոր տոննա մետաղ վերածվում է գլարատաշեղի։ Ըստ երևույթին, այստեղ դեր է խաղում այն հանգամանքը, որ մեքենաշինարարները իրականում տնտեսապես շահագրգռված են թողարկելու ծանր, նյութատար պատրաստուկներ, դետալներ և ագրեգատներ։ Այս մասին մտահոգությամբ էին նշում նոր հնգամյակի հիմնական ուղղությունների քննարկման շատ մասնակիցներ։

Խնայողության ռեժիմի կիրառման ասպարեզում առկա շատ թերություններ բացատրվում են նրանով, որ ոչ բոլոր կոլեկտիվներում է բարձր աշխատանքային կարգապահությունը, որ նրանցից շատերում մեծ է կադրերի հոսունությունը։ Ճիշտ է, հնգամյակի տարիներին հանրապետությունում, մեկ բանվորի հաշվով, աշխատաժամանակի կորուստները նվազել են 14 տոկոսով, իսկ կադրերի հոսունությունը՝ 15 տոկոսով, այնուամենայնիվ, դրանք դեռևս մեծ են։

«Փորձը վկայում է,— ՀԿԿ XXVII համագումարում նշեց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը,— որ գործալքումները, աշխատանքային կարգապահության խախտումները, կադրերի հոսունությունը նվազագույնի են հասցված այն կոլեկտիվներում, որտեղ կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարների հետ միասին, դաստիարակչական համառ աշխատանք են կատարում, օրավուր հոգ տանում մարդկանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման մասին, ստեղծում են ընկերականության և փոխադարձ օգնության մթնոլորտ, աշխատանքային կարգապահության խախտման յուրաքանչյուր փաստի նկատմամբ անհանդուրժողականության մթնոլորտ»։ Արտադրության մեջ, յուրաքանչյուր աշխատատեղում կարգապահության ու կազմակերպվածության հետագա բարելավումը տնտեսական և սոցիալական զարգացման պլանների կենսագործման անխախտ պայմանն է, աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր աղբյուրը։ Աշխատանքային կայուն կարգապահության դերը բարձրացնելու նպատակով անհրաժեշտ է մշտապես և ամենուրեք հաշվի առնել դրա մակարդակը սոցիալիստական մրցության արդյունքներն ամփոփելիս և կոլեկտիվին պարգևներ ու կոչումներ շնորհելիս։

Աշխատանքի սոցիալիստական կարգապահությունը, իբրև գործի նկատմամբ գիտակցական վերաբերմունքի արտահայտություն, ձևավորվում է մեր հասարակության ողջ կացութաձևով։ Կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները կոչված են համառ, հետևողական աշխատանք կատարել կոլեկտիվներում կարգապահությունն ամրապնդելու համար, արմատախիլ անել ձևական վերաբերմունքի վերապրուկները։

Խնայողության համար շարժումն ակտիվացնելու նպատակով կազմակերպվում են արտադրության ռեզերվների և տնտեսման ստուգատեսներ, սոցիալիստական սեփականության պահպանության արշավ-ստուգումներ, ստեղծվում է խնայողության կոմերիտական ֆոնդ, լայն տարածում է գտնում խնայողության անձնական հաշիվները կիրառելու մեթոդը։ Կոլեկտիվների լավ օգնականներն են ժողովրդական վերահսկողության խմբերն ու կոմերիտական լուսարձակները։ Անժխտելի է, որ խնայողության համաժողովրդական շարժմանը առավել ակտիվ են մասնակցում նրանք, ովքեր օժտված են տնտեսական գիտելիքներով, լավ գիտեն ժամանակի, րոպեի գինը, հանրային սեփականության արժեքը։

Միշտ պետք է հիշել, որ ինչքան մեծ է հասարակության տրամադրության տակ եղած նյութական հարստությունը, այնքան մեծ է նաև խնայողության համար պայքարի ժողովրդատնտեսական արդյունքը։ Էկոնոմիկայի վիթխարի մասշտաբների այժմյան պայմաններում խնայողության նույնիսկ ամենափոքր տոկոսը վերաճում է միանգամայն պատկառելի թվերի։ Այսպես, էլեկտրաէներգիայի խնայողության մեկ տոկոսը ողջ երկրի մասշտաբով կկազմի ավելի քան 10 միլիարդ կիլովատ-ժամ։ Նավթի տնտեսված յուրաքանչյուր տոկոսը հավասար է 5 միլիոն տոննա թանկարժեք վառելիքի և հումքի։ Մեկ տոկոս պողպատի խնայողությունը մեկ և կես միլիոն տոննա մետաղ է, որը բավական է երկու միլիոն «Ժիգուլի» ավտոմեքենա պատրաստելու համար։

Կարելի է հիշել նաև այսպիսի մի թիվ։ Եթե մենք կարողանանք մեքենաշինության մեջ տնտեսել մեկ տարում օգտագործվող սև մետաղի գլանվածքի մեկ տոկոսը, ապա դրանով կարելի է ստանալ 146 հազար «ԶԻԼ—130» ավտոմեքենա կամ 74 հազար «Տ—150Կ» տրակտոր։

Տպավորիչ և պատկառելի են մեր հանրապետության մեկ օրը բնութագրող թվերն ու փաստերը։ Սովետական Հայաստանը մեկ օրում արտադրում է 37 հազար զույգ կաշվե կոշիկ, 13,5 հազար ժամացույց, երկաթուղային տրանսպորտը փոխադրում է 54,7 հազար տոննա բեռներ և 13,4 հազար ուղևոր, ավտոմոբիլային տրանսպորտը՝ 207,9 հազար տոննա բեռ և ավելի քան մեկ միլիոն ուղևոր, օդային տրանսպորտը փոխադրում է 3,1 հազար մարդ։ Հանրապետությունում ամեն օր բնակարան է ստանում 284 մարդ։ Ամեն օր միջին հաշվով լույս են տեսնում 671,7 հազար օրինակ լրագրեր, մեր բնակիչները գնում են 7 միլիոն ռուբլու մթերային և արդյունաբերական ապրանքներ, 11,8 հազար մարդ այցելում է համերգներ, ներկայացումներ։

Մեկ օրում հանրապետությունում արտադրվում է 37 միլիոն կիլովատ-

ժամ էլեկտրաէներգիա։ Էապես ամրապնդվել է հանրապետության էներգետիկ բազան։ Էլեկտրակայանների սահմանված կարողությունը տասներորդ հնգամյակում մեծացավ 1,4 անգամ, իսկ էլեկտրաէներգիայի տարեկան արտադրությունը հասավ 12,7 միլիարդ կիլովատ-ժամի։

Սակայն ինչպիսի բարձր տեմպերով էլ, որ մենք զարգացնենք էներգետիկան,— նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— ջերմության և էներգիայի խնայողությունը առաջիկայում ևս կլինի կարևոր համապետական խնդիր» և չի կարելի առանց խստիվ հաշվառման օգտագործել էլեկտրաէներգիայի յուրաքանչյուր կիլովատ-ժամը, մազութի կիլոգրամը, ջերմության կալորիան։

Կենսագործելով կուսակցության այդ կարևոր պահանջը, հանրապետության աշխատավորները հետևողական ջանքեր են գործադրում վառելիքաէներգետիկ ռեսուրսները խնայողաբար օգտագործելու ասպարեզում։ Անցած հնգամյակի տարիներին միայն Երևան քաղաքում տնտեսվել է 200 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 100 հազար տոննա պայմանական վառելանյութ։

Էլեկտրաէներգիայի արտադրության և վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողության ասպարեզում աչքի ընկնող հաջողությունների է հասել Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանը։ Տասներորդ հնգամյակում այստեղ էլեկտրաէներգիայի արտադրությունը հասավ 27,4 միլիարդ կիլովատ-ժամի՝ 163 միլիոնով ավելի պլանավորվածից։ Միայն 1980 թ. արտադրված է 47 միլիոն կիլովատ-ժամ արտապլանային էլեկտրաէներգիա։ Ջերմային էներգիայի արտադրությունը մոտենում է մեկ և կես միլիոն հեկակալորիայի։ Ձեռնարկությունում հետևողական աշխատանք է կատարվում արտադրության արդյունավետությունը և որակը բարձրացնելու, տեխնոլոգիական պրոցեսները կատարելագործելու նպատակով։ Հետևողականորեն բարձրացվում է կաթսաների և գեներատորների արտադրողականությունը։ Այդ ամենի շնորհիվ տնտեսվել է 41 հազար տոննա պայմանական վառելանյութ։ Հրազդանցիները հանդես եկան հայրենասիրական նախաձեռնությամբ և ՍՄԿԿ XXVI համագումարի օրերին աշխատեցին տնտեսված հումքի հաշվին։ Ջերմաէլեկտրակայանի կոլեկտիվը կրկին արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։

Հարկ է հիշել, որ երկրի ողջ էլեկտրաէներգիայի շուրջ 70 տոկոսը օգտագործվում է արդյունաբերության մեջ։ Սակայն մի՞շտ է, որ այն խնայողաբար է օգտագործվում։ Հաճախ դատարկ գործում է էլեկտրաշարժիչը, անտեղի վառվում է լույսը։ Շռայլվում է էներգիան, երբ կատարյալ չէ տեխնոլոգիական պրոցեսը, հնացած են մեքենան կամ սարքավորումը։ Պատճառներն ու կորուստները, ցավոք, շատ են։

Խնայողության կարևոր ռեզերվ է ջերմաէներգետիկ ռեսուրսների առավել ռացիոնալ օգտագործումը։ Պատահական չէ, որ կենցաղում ջերմաէներգետիկ ռեսուրսների կորուստների հարցը արծարծվեց ՀԿԿ XXVII համագումարում։ Նշվեց, որ կոմունալ տնտեսության բնակելի տները, կուլտուր-կենցաղային և այլ օբյեկտները ջերմությամբ հուսալիորեն ապահովելու հարցերը մինչև վերջ լուծվել չեն կարող, եթե ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմները, ձեռնարկությունների ղեկավարները, բոլոր տնտեսական ղեկավարները պատշաճորեն չզբաղվեն էներգետիկ ռեսուրսների, ջերմային էներգիայի խնայողության հարցերով։ Վառելիքային ռեսուրսները խնայողաբար օգտագործելու, ինչպես նաև մայրաքաղաքի փոքր կաթսայատները վերացնելու նպատակով համագումարը խնդիր դրեց առավել լրիվ օգտագործել Երևանի ջերմաէլեկտրակայանի կարողությունները, իսկ հաջորդ հնգամյակում կառուցել շոգեգազային սարքավորմամբ նոր ջերմաէլեկտրակայան։

Սովետական պետությունը հսկայական արժեքներ է վստահում բանվորներին։ Նրանց աշխատատեղի արժեքը հազարավոր ռուբլիների է հասնում։ Այսպես, յուրաքանչյուր բանվորի արդյունաբերության մեջ միջին հաշվով բաժին է հասնում 7 հազար ռուբլու հիմնական արտադրական ֆոնդ, տրանսպորտում՝ 12 հազար, շինարարության մեջ՝ 3 հազար, սովխոզներում՝ 9 հազար ռուբլի և այլն։ Բացի այդ, ամեն օր աշխատանքի պրոցեսում ծախսվում են



վիթխարի քանակությամբ հումք և այլ նյութեր։ Արտադրության մեջ յուրաքանչյուր բանվոր տարեկան միջին հաշվով ծախսում է 15 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Պարզ է, թե տնտեսավարների, ինժեներատեխնիկական աշխատողների հետ մեկտեղ որքան մեծ է բանվորների դերը նյութական և աշխատանքային ռեսուրսների տնտեսման, խնայողության խստագույն ռեժիմի իրականացման գործում։

Մեր լայնարձակ հայրենիքի ընդերքում կան վիթխարի հարստություններ։ Սակայն մեզանից ոմանք դեռևս այն թյուր կարծիքին են, թե մեր երկրի ընդերքը անսպառ է։ Այդպիսի դատողությունը անհիմն է և նույնիսկ վնասակար։ Երկրի հարստությունները բնավ անսպառ չեն։ Չէ՛ որ տարեցտարի բարձր տեմպերով զարգանում է ժողովրդական տնտեսությունը, առավել մեծ թափ է ընդունում կապիտալ շինարարությունը, աճում է մեքենայական պարկը։ Դա պահանջում է ավելի շատ սև, գունավոր և հազվագյուտ մետաղներ, վառելանյութ և էլեկտրաէներգիա։

Երկրի ժողովրդական տնտեսության նոր վիթխարի առաջընթացի ծրագիր հաստատեց ՍՄԿԿ XXVI համագումարը, որի կենսագործումը պահանջում է ապահովել նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների առավել խնայողություն։ Տասնմեկերորդ հնգամյակի «Հիմնական ուղղություններում» խնդիր է դրվում խնայողաբար օգտագործել նյութական ռեսուրսները։

Կուսակցությունը կոչ է անում ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում ապահովել տնտեսման և խնայողության խստագույն ռեժիմ, տնտեսավարման ոլորտում իրականացնել ռեսուրսների առավել լրիվ օտագործմանն ուղղված միջոցառումների համակարգ։

ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումները կենսագործելու համար ծավալված սոցիալիստական մրցությունը կնպաստի բացահայտելու և մեր տնտեսական կյանքում։ գործողության մեջ դնելու նորանոր ռեզերվներ

Նյութական ռեսուրսների տնտեսման ասպարեզում առաջավորների փորձի լայն տարածումը սովետական հասարակության արտադրաուժերի զարգացումն է՛լ ավելի արագացնելու, կուսակցության XXVI համագումարի որոշումները, տասնմեկերորդ հնգամյակի կանխագծումներն անշեղորեն կենսագործելու լուրջ խթան է։

# ՈՒՇԱԳՐԱՎ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆ*

**ԵՐԱԺՇՏԱԳԵՏ ԱԼ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆԻ** Էջեր հայ-ռուսական երաժշտական կապերի պատմությունից աշխատությունն ընդգրկում է XIX դարի երկրորդ կեսից մինչև XX դարի առաջին տասնամյակը: Հեղինակն այստեղ լուսաբանում է հայ-ռուսական երաժշտական փոխմերձեցման ու համագործակցության դրսևորումները, ցույց տալիս ռուս երաժշտական մշակույթի պրոգրեսիվ գործիչների ազդեցությունը հայ պրոֆեսիոնալ երաժշտության զարգացման մարզում, ինչպես և հայ երաժիշտների խաղացած դերը ռուս երաժշտական կյանքում:

Ամենայն բարեխղճությամբ ու բծախնդրությամբ հեղինակն ուսումնասիրել է հայկական և ռուսական օրաթերթերն ու հանդեսները, հուշագրություններն ու նամակագրությունները, վավերագրական փաստաթղթերը, Երևանում, Մոսկվայում և Լենինգրադում պահպանվող արխիվային նյութերը:

Հեղինակը նկարագրում է երկու ժողովուրդների ներկայացուցիչների հետաքրքրությունների ընդհանրության ու փոխադարձ օգնության վառ օրինակներ, նշում հայ երաժշտական օջախների հիմնադրման փաստը, ցույց տալիս այն սերտ կապն ու փոխադարձ հետաքրքրությունը, որ հանդես է բերվում երկու ժողովուրդների կուլտուրայի հանդեպ: Ուշագրավ է, որ 1816 թ. Ի. Վ. Դոբրովոլսկին Աստրախանում հրատարակում էր «Ասիական երաժշտական հանդեսը», որի երկրորդ համարում նա զետեղել է հայկական երգերի գրառումներ: XVIII դարի 20—30-ական թվականներին Մոսկվայի «Дамский журнал», «Молва», «Вестник Европы», «Московские ведомости» ամսագրերում հրապարակվում են Գևորգ Դադյանի քննախոսականները և հոդվածները, ուր ցույց են տրվում ռուսական երաժշտության կատարողական արվեստի ինքնատիպությունն ու վարպետությունը:

Հայ-ռուսական կապերն ավելի բեղմնավոր ու արգասավոր եղան Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միավորվելուց հետո, երբ ռուսական բարձրագույն ուսումնական հաստատությունների իրենց դռները բացեցին հայ ուսումնատեր երիտասարդության առաջ. զինվելով ռուսական մտքի առաջավոր գաղափարներով, նրանք ներգործում էին հասարակական ու գեղարվեստական մտքի բոլոր ոլորտներում:

XIX դարի երկրորդ կեսը հայ մշակույթի, մասնավորապես երաժշտական արվեստի, նոր, առավել բեղմնավոր ժամանակաշրջան է: Այդ թվականների հայ պրոֆեսիոնալ երաժշտության առջև ծառացած էին կարևորագույն խնդիրներ՝ եվրոպական երաժշտության նվաճումների յուրացումը, բազմաձայնության արմատավորումը. միայն այդ ճանապարհով կարելի էր մերձենալ և հաղորդակցվել համաշխարհային երաժշտական մշակույթին:

Հեղինակն իրավամբ նշում է, որ ժամանակի առաջադեմ հայ երաժիշտներ Կարա-Մուրզան, Մակար Եկմալյանը և Նիկողայոս Տիգրանյանը հայրենի ժողովրդական երաժշտության գեղարվեստական ներշնչող ուժի, դրա գեղագիտական խոշորագույն արժեքի իսկական գնահատողներն էին և ըմբռնում էին ժողովրդական երաժշտության մեծ նշանակությունը պրոֆեսիոնալ երաժշտության զարգացման համար: Ռուսական դեմոկրատական հայացքների և արվեստի ժողովրդայնության սկզբունքների հետևորդներ էին նրանք:

Ռուս և համաշխարհային դասական երաժշտական արվեստը մեծապես ներազդեց նախասովետական շրջանի խոշորագույն հայ կոմպոզիտորների ստեղծագործական որոնումների վրա: Այս տեսանկյունից էլ արժեքավորվում է Կարա-Մուրզայի, Եկմալյանի, Տիգրանյանի, Կոմիտասի և Սպենդիարյանի գործունեությունը:

Ռուսական իրականությունը հայ երաժշտական արվեստին ծանոթացնելու գործում մեծ վաստակ ունի կոմպոզիտոր, Պետերբուրգի Մարիինյան օպերային թատրոնի խմբավար Գ. Կազաչենկոն: 1900 թ. «Մշակ» օրաթերթի № 4-ում տպագրված է Կազաչենկոյի հարցազրույցը «Крым» թերթի թղթակցի հետ. «Ես աշխատել եմ տարածել հայկական մեղեդիները Պետերբուրգում, Մոսկվայում, Խարկովում տված համերգների միջոցով: Եվ ահա դա իմ մեջ միտք հղացրեց Փարիզի առաջիկա ցուցահանդեսում համերգների մի շարք անցկացնել՝ նվիրված հայ ազգային երաժշտությանը»:

1900 թ. դեկտեմբերի 9-ին տեղի է ունենում առաջին համերգը Պետերբուրգի ազնվական ժողովարանի դահլիճում հայ արտիստներ՝ Հ. Նալբանդյանի, Ն. Ծանլամյանի, Գ. Միրզայանի (Սյունի) և Մ. Վարդիկյանի մասնակցությամբ: Հայտագրում զգալի տեղ էին գրավում Գ. Կազաչենկոյի մշակած հայկական ժողովրդական, ազգային-հայրենասիրական ու հոգևոր երգերը:

Ռուս անվանի դիրիժոր և կոմպոզիտոր Մ. Իպոլիտով-Իվանովի անունը սերտորեն կապված է Անդրկովկասի ժողովուրդների, մասնավորապես հայ երաժշտական մշակույթի հետ: Մեծ մանկավարժը մասնագիտական խոր գիտելիքներ է հաղորդել հայ երաժիշտներից շատերին: 1882 թվականին, հաստատվելով Թիֆլիսում, ստանձնելով Թիֆլիսի օպերայի գլխավոր դիրիժորի և երաժշտական ուսումնարանի դիրեկտորի պարտականությունները, հայ երաժշտական գործիչների աջակցությամբ, նա եռանդուն ու տևական ջանքեր է գործադրել Թիֆլիսի ռուսական օպերան միաձույլ, պրոֆեսիոնալ կոլեկտիվ դարձնելու նպատակով: Իս. Փիթոևը, որ գլխավորում էր ռուսական երաժշտական ընկերության տեղի բաժանմունքը, ինչպես նաև օպերայի թատրոնը, հանձին Իպոլիտով-Իվանովի՝ գտավ իր լավագույն օգնականին ու բարեկամին: Մեծ է նրա դերը նաև Թիֆլիսի ռուսական երաժշտական ընկերության բաժանմունքի հիմնադրման, սիմֆոնիկ համերգների կազմակերպման ու ժողովրդական ֆոլկլորի ձայնագրման մարզում: Իպոլիտով-Իվանովին ոգևորել է ժողովրդական վառ ու ցայտուն, ինքնատիպ, խորապես հուզաթաթավ երգ-երաժշտությունը: Նա գրի է առնում անդրկովկասյան ժողովուրդների, այդ թվում նաև հայկական ժողովրդական երգեր և օգտագործում դրանք իր ստեղծագործություններում: Նա գտնում էր, որ ժողովրդական երգերի գրառումը, ուսումնասիրումն ու մշակումը յուրաքանչյուր կոմպոզիտորի առաջնահերթ խնդիրն է:

Հայկական ժողովրդական երգերից նա գրառել ու մշակել է «Կռունկը», «Ծիծեռնակը», «Արի, իմ սոխակ» և այլն: 1895 թվականին նա գրել է հայկական ռապսոդիան, որտեղ հմտորեն օգտագործված է «Ծիծեռնակը»: Իր Կովկասյան էսքիզի առաջին շարքի (գրված 1884 թ.) վերջին մասում մշակել է «Զեյթունցոց քայլերգը»: Ավելի ուշ՝ 1933 թ., գրել է լարային կվարտետ՝ հայկական թեմաներով:

Հայ-ռուսական երաժշտական կապերի տարեգրության մեջ կան շատ նյութեր, որոնք վերաբերում են ռուս խոշորագույն կոմպոզիտորներից մեկին՝ Ս. Ռախմանինովին և հայ մշակույթի գործիչներին: Դրանք մասնավորապես արտացոլված են Ս. Ռախմանինովի մասին Կ. Սարաջևի և Վ. Կորգանովի հուշագրություններում, մանավանդ Մարիետա Շահինյանի և Ռախմանինովի նամակագրության մեջ: Հիշարժան է Մ. Շահինյանի՝ Ս. Ռախմանինովի մասին գրած Հոգեբանական էտյուդը, իսկ ավելի ուշ՝ Ռախմանինովի մենագրությունը: Մարիետա Շահինյանը Ռախմանինովի համար, մի տեսակ, գրական խորհրդատու է հանդիսացել, ռուս և օտար բանաստեղծներից ընտրելով տեքստեր, որոնց հիման վրա Ռախմանինովը գրել է երգեր ու ռոմանսներ: Այդ ռոմանսներից մեկը գրված է Ավ. Իսահակյանի Ռոնենի բանաստեղծության տեքստով: Ի՞նչն է գրավել Ս. Ռախմանինովին Ավ. Իսահակյանի բանաստեղծության մեջ: Մ. Շահինյանին գրած նամակում գտնում ենք այդ հարցի պատասխանը.— «Այդ հայ բանաստեղծը շատ երաժշտականորեն է զգում բնությունը: Եթե բոլորը կարողանային բնության մասին այդպես գրել, ապա մեզ՝ երաժիշտներիս, կմնար մի թեթև դիպչել տեքստին, և երգը պատրաստ կլիներ»: Նշենք նաև այն, որ Կ. Սարաջևը, որպես ջութակահար և դիրիժոր, Ռախմանինովի և Ս. Պրոկոֆևի նոր ստեղծագործությունների առաջին կատարողն ու պրոպագանդիստն է հանդիսացել այնպես, ինչպես պրոֆեսոր Հովհաննես Նալբանդյանը՝ ռուսական երաժշտական աշխարհում ջութակի լավագույն կատարողներից մեկը:

Սիմֆոնիկ երաժշտության տարածման ասպարեզում նշանակալից դեր է խաղացել դիրիժոր Ալեքսանդր Ասլանովը (Ասլանյան), որն իր գործունեությունը ծավալել է Պետերբուրգում և այլուր:

Հայ-ռուսական կապերի վառ օրինակ են Ալ. Սպենդիարյանի սերտ կապերն ու ստեղծագործական համագործակցությունն իր ուսուցչի՝ Ն. Ռիմսկի-Կորսակովի, նրա աշակերտներ Գլազունովի, Լյադովի հետ: Այդ բարեկամությունը խարսխված էր գաղափարական ու գեղագիտական հայացքների ընդհանրության վրա:

«Ես ինձ դասում եմ ռուսական երաժշտական այն դպրոցին,— իր ինքնակենսագրության մեջ գրել է Ալ. Սպենդիարյանը,— որ ստեղծել են Գլինկան, Բալակիրևը, Բորոդինը, Ռիմսկի-Կորսակովը և ուրիշներ»:

Հայ բանաստեղծների տեքստերով գրված երգերում ու ռոմանսներում իր պատկառելի

* *Ալ. Թադևոսյան*— Էջեր հայ-ռուսական երաժշտական կապերի պատմությունից, *ՀՍՍՀ ԳԱ Հրատ., 1977 թ.*

բաժինն ունի մեծապես Կյուին. 1907 թ. նա գրեց մի ամբողջ երգաշար, այն է.— «Հայի արյուն», «Ինչպես հզոր մրրիկ» (խոսք՝ Լ. Մանվելյանի), «Երազ» (խոսք՝ Ս. Ծանազիզի), «Հոգի կուտամ, հոգի տուր ինձ», «Մշուշն եկավ, թևը փռեց» (խոսք՝ Ավ. Իսահակյանի), «Ներան» (խոսք՝ Պ. Դուրյանի), «Մարտիկի մահը» (խոսք՝ Հովհ. Հովհաննիսյանի):

Հայ իրականությունը տվել է երգիչ-երգչուհիների փայլուն մի համաստեղություն, որը մեծապես նպաստել է ռուսական օպերային և երգարվեստի առաջընթացին: Ահա նրանք՝ Բեգլար Ամիրջան, Ներսես Շահլամյան, Արշակ Կոստանյան, Մագդալինա Գյուլջյան, Մ. Գաբրագաշյան (Կարակաշ), Աֆրիկյան (Պետրո Սազինարի), Սոֆյա Ակիմովա (Ակիմյան), Նինա Դարիելի (Դորդանյան), Ելենա Տերյան-Կորգանովա (Դորդանյան), Նադեժդա Պապայան և ուրիշներ:

Հատկապես մեծ է Նադեժդա Պապայանի ավանդը ռուսական օպերային դպրոցի զարգացման բնագավառում: Ռուս նշանավոր երգիչներ Սոբինովի, Երշովի, Շալյապինի խաղընկերուհին հանդես է եկել աշխարհի տարբեր բեմահարթակներում (Միլան, Փարիզ, Լոնդոն...), գերել ու փոթորկել ունկնդիրների ներաշխարհը, գեղագիտական մեծագույն հաճույք պատճառելով մարդկանց: Բնությունը շռայլորեն օժտել էր նրան մարդկային ու արտիստական հարուստ տվյալներով: Երաժշտական նրբին ու խոր զգացողությունը, ձայնի գեղեցիկ տեմբրը, կատարողական կատարելությունը, նրբերանգների հարստությունն ու նրբազգեցությունը դարձրել էին նրան ժամանակի ամենասիրված երգչուհին: Նրա մարմնավորած բեմական կերպարները աչքի են ընկել համոզիչ ավարտունությամբ, հուզահոգեբանական ճշմարտացիությամբ: Երգչուհուն անծանոթ է եղել ժանրային սահմանափակությունը. քնարականից մինչև երգիծականը, դրամատիկականից մինչև ողբերգականը: Այդ է ցույց տալիս նրա կատարած դերերգերի ցանկը. Տատյանա («Եվգենի Օնեգին»), Լիզա («Պիկովայա դամա»), Թամար («Դև»), Մարգարիտ («Ֆաուստ»), Վիոլետա («Տրավիատա»), Սուսաննա («Ֆիգարոյի ամուսնությունը»), Ռոզինա («Սևիլյան սափրիչ»), Դեզդեմոնա («Օթելլո»), Ջուլիետա («Ռոմեո և Ջուլիետա»), Միմի («Բոհեմա»), Նեդա («Պայացներ»)... Քննադատները իրենց քննախոսականներում միաբերան վկայում են, որ ռուսական կանացի կերպարները անթերի ու հոգեբանական հավաստիությամբ կերպարանավորվում են օրիորդ Պապայանի կատարմամբ:

Ավանդույթներով հարստացած հայ-ռուսական երաժշտական կապերն իրենց բազում արտահայտություններով մեծապես նպաստել են երաժշտական կուլտուրայի հետագա զարգացմանը: Մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո այդ կապերն ստացան նոր որակ, նոր բովանդակություն, առավել խորացան ու ընդլայնվեցին դրանք սովետական ժողովուրդների եղբայրական միասնության ընտանիքում:

Էջեր հայ-ռուսական երաժշտական կապերի պատմությունից գիրքը փաստական տվյալներով հարուստ, ուշագրավ մի աշխատություն է: Այն նոր լույս է սփռում համարյա մի դար ընդգրկող պատմաշրջանի վրա, հարստացնում ու ընդլայնում է մեր ճանաչողական շրջանակները:

**Խ. ԹՈՌՋՅԱՆ**



Адрес редакции: 375033. Ереван-33 ул. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*Հանձնված է շարվածքի՝ 20.2.81—25.2.81: Ստորագրված է տպագրության 12.3.81, ՎՖ 04541 Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրության՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 16.132: Պատվեր 374:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյանի փող. № 28:*

Типография издательства ЦК КП Армении. 375009, Ереван-9, ул. Исаакяна 28.

# *Նոր գրքեր*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: Հ. 32: *«Հայաստան» հրատ., 1980:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVI համագումարին և կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում: *«Հայաստան» հրատ., 1981:*

ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման հիմնական ուղղությունները 1981—1985 թվականների և մինչև 1990 թ. ընկած ժամանակաշրջանում: *«Հայաստան» հրատ., 1980:*

Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության օրենքը Հայկական ՍՍՀ ժողովրդական դեպուտատների քաղաքային, քաղաքի շրջանային սովետի մասին: *«Հայաստան» հրատ., 1981:*

Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության օրենքը Հայկական ՍՍՀ շրջանային սովետի մասին: *«Հայաստան» հրատ., 1981:*

Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության օրենքը Հայկական ՍՍՀ գյուղական ու ավանային սովետի մասին: *«Հայաստան» հրատ., 1981:*

Մ. ԱՐԼԱԶԱՐՈՎ— Արտեմ Միկոյան: *«Հայաստան» հրատ. 1981:*

Մ. ԶՈՒԼԱԼՅԱՆ— Արևմտյան Հայաստանը 16—18 դդ.: *«Հայաստան» հրատ., 1980:*

ԱԼ. ԶԼԱՏՈՍՏՐՈՒԲՈՎ— Կյանք-սխրագործություն: *«Հայաստան» հրատ., 1981:*

Մ. ԳՐԻԳՈՐՅԱՆ.— Արդի հակամարքսիստական տնտեսագիտական տեսությունների քննադատությունը: *«Հայաստան» հրատ., 1980:*

К. МАРКС и Ф. ЭНГЕЛЬС—**Избранные произведения.** В 3-х т. Т. 1. М., Политиздат, 1980.

В. АФАНАСЬЕВ — **Великое открытие Карла Маркса.** Методол. роль учения о двойственном характере труда. М., «Мысль», 1980.

В. КУЗЬМИН — **Принцип системности в теории и методологии К. Маркса.** Изд. 2-е. М., Политиздат, 1980.

Е. СТЕПАНОВА — **Фридрих Энгельс.** Крат. биогр. очерк. 3-е, перераб. и доп. изд. М., Политиздат, 1980.

В. ШАПКО — **Обоснование В. И. Лениным принципов государственного руководства.** Изд. 2-е, перераб., доп. М., Политиздат, 1980.

И. ШВЕЦ и И. ЮДИН — **Как строится, живет и действует КПСС.** М., Политиздат, 1980.

**Международное рабочее движение.** Вопросы истории и теории. Т. 4. Великий Октябрь и международный рабочий класс. 1917—1923. М., «Мысль», 1980.

**Сохранение мира — общее дело всех народов.** Материалы Всемирного парламента народов за мир, проходившего в Софии, в сентябре 1980 г. М., Изд-во АПН, 1980.

**Марксисты-ленинцы Латинской Америки в борьбе за мир и прогресс.** Сборник. М., «Прогресс», 1980.

В. ПЕТРОВСКИЙ — **В интересах народов всего мира.** Борьба СССР на международных конференциях и переговорах за мир, безопасность и предотвращение войны. М., Политиздат, 1980.

С. ВИШНЕВСКИЙ — **Деятельность КПСС по коммунистическому воспитанию трудящихся.** М., «Знание», 1980.

Н. ПОЛЯКОВА — **Укрепление идейно-политического единства советских профсоюзов в борьбе за социализм.** М., Профиздат, 1980.

Г. САРКИСЯН — **Благосостояние народа — цель социальной политики КПСС.** М., «Знание», 1980.

Գինը՝ 20 կ.
Индекс 77783
ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

## ԱՎՏՈՄԱՏ՝ ՏՈՄՍԱՎԱՃԱՌԻ ՓՈԽԱՐԵՆ

ԳԴՀ-ում գործում է ցանկացած գնացքի համար հանրապետության երթուղային ցանցի 100-ից ավելի կայարանների տոմսեր վաճառող ավտոմատ սարք:

Ավտոմատը կառավարում է «Ռոբոտրոն Կ—1510» միկրոպրոցեսորը: Հպվելով առաջապանելին ամրացված թվերով սենսորային կոնտակտին՝ հարկ է հավաքել անհրաժեշտ կայարանի պայմանական համարը (որոնք հիմնականում համապատասխանում են բնակավայրի փոստային ինդեքսին): Ապա հավաքում ես գնացքի համարը, վագոնի տեսակը, մեկնելու օրը, ժամը. ավտոմատի էկրանին հայտնվում են այդ բոլոր տվյալները, որպեսզի ուղևորը կարողանա ստուգել՝ ճիշտ են իրեն հասկացել և հետո ցույց է տրվում տոմսի արժեքը: Ավտոմատն ընդունում է 10 պֆենիգից մինչև 5 մարկ, և քանի որ ԳԴՀ-ն մեծ երկիր չէ, այդքանը բավական է ցանկացած կայարանը հասնելու համար: Ավտոմատը տալիս է և վերադարձի տոմսերը: Տոմսը տպագրված է 10 վայրկյանից էլ պակաս ժամանակում:

## ԲԱՆՋԱՐԱՆՈՑ՝ «ԳԼԱՆԱՓԱԹԵԹՈՒՄ»

ԲՍՍՀ ԳԱ ընդհանուր և անօրգանական քիմիայի իոնափոխանակման պրոցեսների թերմոդինամիկայի լաբորատորիայում ստեղծվել է արհեստական հող:

Գիտությանը վաղուց հայտնի են միացություններ, որոնք կարող են արտազատել ու կլանել հանքային աղերի (իոնների) մասնիկները, ինչպես այդ կատարում է հողը. բույսերին մատակարարել սննդանյութեր, իսկ թափուկները՝ կլանել: Մի խումբ գիտնականներ՝ ԲՍՍՀ ԳԱ թղթակից-անդամ Վ. Սոլդատովի ղեկավարությամբ, մշակել են հատուկ միացություն ստանալու մեթոդ և ստեղծել են սարք, որն արդյունաբերության թողարկած հումքից պատրաստում է հատիկավոր հիմք (սուբստրատ). այն կարող է լիովին ապահովել բույսերը սննդանյութերով: Իոնացված հատիկները մինչև հող կոչվելու իրավունք ստանալը մասնագետների կողմից ենթարկվեցին մանրակրկիտ փորձարկման: Արհեստական մարգերում ցանած կարտոֆիլը, գազարը, բազուկը, կաղամբը, բողկը և ավելի քան 200 տեսակի բույսեր աճեցին ինչպես սևահողում և հիանալի բերք տվին:

Գիտնականները մտահղացան օգտագործել այն նաև ուղեծրում: Ցավոք այն, ինչ գործածելի էր երկրի պայմաններում, պիտանի չեղավ տիեզերքում: Իսկ եթե պատրաստվի ինչ-որ միատարր, ամուր, գործվածքի պես մի բա՞ն: Չէ՞ որ իոնիտները կամ իոնափոխանակման խեժը և սինթետիկ նյութեր են, նման այն նյութերին, որոնցից ստանում են արհեստական նրբաթել: Եվ պատրաստվեց գործվածքը: Սերմերը «ցանում են» գործվածքի վրա, ապա թղթի նման փաթաթում և այդպես պահում են այնքան, որքան պետք է: Սերմերն սկսում են ծլել, աճել միայն այն ժամանակ, երբ «հողը» խոնավանում է:

Այդ ամենը հաշվի են առել մասնագետները՝ ստեղծելով «Օազիս» տիեզերական ջերմոցը «Սալյուտ» ուղեծրային կայանի համար: Չնայած խիստ տարբեր պայմաններին, տիեզերքում աճեցին երկրային բույսեր— ամուր, հյութալի և ակնահաճո կանաչով:

## ՍՈՒՐՃԻ ՄՐՈՒՐԸ՝ ՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹ

Մասնագետ-քիմիկոսները մշակել են նախկինում երբեք չօգտագործվող հումքը օրգանական պարարտանյութի փոխարկելու արդյունավետ պրոցես: Այդ նպատակով Ճապոնիայում կառուցվել են մասնագիտացված մի քանի ձեռնարկություններ: Քաղաքային սրճարաններից այստեղ է բերվում սուրճի մրուրը և խառնվում փայտի թեփի, կեղևների ու գոմաղբի հետ:

Բնական խմորման արդյունքը լինում է բարձրորակ պարարտանյութը: